# ԽՆԴԻՐ

# ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՔՆՆՈՒԹԻՒՆ

1836Ի

ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*(Պալաժէնիայի)*

ԿԱՐԳ ԵՒ ԿԱՆՈՆ

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ

ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ


Ի ԼՈՅՍ ԱԾՈՂ

**ՄԱՐԿՈՍ ԱՂԱԲԷԿԵԱՆ**



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

**1865**

# ԽՆԴԻՐ

# ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

---

ՔՆՆՈՒԹԻՒՆ

**1836ի**

**ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ**

(*Պալաժէնիայի*)

---

ԿԱՐԳ ԵՒ ԿԱՆՈՆ

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ

ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

---

Ի ԼՈՅՍ ԱԾՈՂ

**Մ. ԱՂԱԲԷԳԵԱՆ**

---

Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

**1865**

## ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԶԱՒԱԿՆԵՐԻՆ

Սկիզբն ամենայն գոյութեանց՝ Աստուած. սկիզբն ամենայն բարեաց՝ սէր. սկիզբն ամենայն շնորհաց խոնարհութիւն:

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ

*Հայաստանեայց Եկեղեցու այն զաւակները, որոնց սրտերում ազգային զգացմունքը սաստիկ ու սէրն էլ եռ է գալի, ի հարկէ հաստատ էլ ունեն, որ հայոց այսօրուայ գոյութիւնն աշխարհիս վրայ՝ պատմութեան մի սքանչելիքն է, այս զգացողութեամբ, այս սէրով և այս հաւատով է անշուշտ, որ իրանց ճիգն են թափում, ջանքն են անում ազգաշինութեան մեծ գործին մէջ։ Խնդրում եմ խոնարհութեամբ Հայաստանեայց Եկեղեցու այս ազգաշէն զաւակներէն, որ Հայոց ազգայնութեան բարոյական և մտաւորական կազմութեան գործաւոր լինելէն յառաջ, Ստեփաննոս Օրբէլեան (1) իմաստասէր պատմաբանի այս ուղիղ և ազդու խօսքերն իրանց սրտերումը դրոշմեն թէ «Սկիզբն ամենայն գոյութեանց՝ Աստուած։ Սկիզբն ամենայն բարեաց սէր։ Սկիզբն ամենայն շնորհաց խոնարհութիւն։» Մեր իմաստուն պատմաբանն այդ խօսքերէն աւելի զօրաւոր, աւելի ներգործուն պատուիրանք չէր կարող մեզ աւանդել։ Հարիւրաւոր տարիներէն յետոյ թող կենդանանան զգայուն ազգայնոց սրտերումն այս մըսեմ խօսքերն և ահա այսօր էլ առիթը մեր յառաջ է գալի իրօրէն արգիւնաւորել մեր մէջ մեր նախնի իմաստունին խօսքերը։ Այսօր այն ժամանակին ենք հասել, որ Հայոց բարոյական ընկերականութիւնը վտանգի մէջ է գտնւում. թէ որ հաւատում ենք,*

---

(1) *Ստեփաննոս Օրբէլեան, Արքեպիսկոպոս Սիւնեաց. Պատմութիւն Սիւնեաց աշխարհին:*

որ Հայոց բարոյական ընկերականութիւնն իրանց համար մի ամենամեծ բարիք է, անպատճառ և մի ամենամեծ սէր պէտք է ունենանք մենք մեր այդ բարոյական ընկերականութեան վրայ. վասն զի ազգային բարոյական սիրով կարող ենք և վայելել ազգային բարոյական բարիք. ազգային բարոյական սէր զգալը մի առանձին շնորհք է Աստուծմէ մարդուս համար, ամէն շնորհք էլ թէ բարոյական և թէ մտաւոր խոհականութեամբ կատարուի. ուրեմն ամենէն յառաջ խոհականութիւն պէտք է ունենանք ազգաշինութեան շնորհն էլ մեզ բնաւորելու համար։ Այո, մեր այսօրուայ ազգի գոյութեան պատճառ մի միայն ինքն Աստուածն է. Թէ որ բարի կը կամենանք մենք մեր Հայոց ազգային և բարոյական ընկերականութեան համար, սէր՝ մեծ սէր պէտք է զգանք նրա վրայ։ Թէ, որ մեր ազգային և բարոյական ընկերականութիւնն էլ վերակազմելու շնորքն էլ կամենում ենք ունենալ։ Պէտք է որ խոհականութեամբ շարժինք. խոհականութիւնն էլ մարդս գիտակցութեամբ ձեռք կբերէ։ Առանց ուղիղ գիտութեան խոհականութիւն չկայ։

Դուրս առնելով Սկեպտիկեան, Կոզմոպոլիտ և օտարներու անունով սնուած ազգայինները, ուղղում եմ իմ խօսքը, բուն հայկական ժողովրդեան մէջ ծնած, հայկական կեանքով ապրած հայկական սնունդով սնուած Հայոց, կամ թէ մեր ազգային և բարոյական ընկերականութեան պատկանող Հայոց, թէ այսօր մեծ խնդիրը մեր Հայոց բարոյական ընկերականութեան վրայ է և ոչ մեր քաղաքային կամ ազգային ընկերականութեան։ Միտ դնելու է, որ այսօր Հայոց բարոյական, ազգային և քաղաքային կեանքը կամ ընկերականութիւնը շատ զգալի կերպով տարբերւում է իրարմէ այն ամէն տեղ ուր Հայոց ժողովրդէն գտնուում է։ Ռուսիայում Հայոց ժողովուրդը մի միայն բարոյական կեանք կամ ընկերականութիւն ունի իրա համար առանձին. քաղաքայինն ու ազգայինը տեղական և տէրութենական օրէնքով ռուսականն է։ Թուրքիայումը բարոյականին հետ ունի և ազգային, քաղաքայինը ծնում է կամ ծնուելու վրայ է, միւս բոլոր ազգերու քաղաքայինովը։ Պարսկաստանում, ինչպէս նաև բուն Թուրքաստանումը, բարոյականն էլ է ճնշուած. միայն

Հնդկաստանումն է, որ ամեն մասնով բարոյական ընկերական ութիւն կվայելեն Հայք, որով գերազանցում են և ազգայինով. բայց քաղաքայինը տեղական է։

Մեր Հայոց ընկերականութեան այս այլևայլ կերպարանքները շատ ազգայնոց շփոթում են այսօր. չենք կարողանում որոշել իրարմէ մեր քաղաքային, ազգային և բարոյական կերպարանքները։ Օրինակի համար, այսօր Թուրքիայում Հայոցմէ ոմանց համար, Հայոց ընկերականութիւնը թէ ազգային է և թէ բարոյական. ազգային է՝ պապական, բողոքական և յունական Հայոց հետ. ազգային և բարոյական միայն բուն Հայոց հետ։ Բայց այս ընկերականութեան կերպարանքն իրօրէն ընդունուած չէ Օսմանեան տէրութենէն, այլ ոմանց համար տեսական է՝ շփոթ գրութեանց վրայ հեմնուած։ Ռուսիայում Հայոց ընկերականութիւնը միայն բարոյական է, այս բարոյական ընկերականութիւնն էլ ճնշուած է ամեն կողմէն ռուսական ազգային, բարոյական և քաղաքային տարրքներէն: Ինչպէս Թուրքիայում մի Հայ կամ ուրիշ քրիստոնեայ մարդ փոխում է իր բարոյական կեանքը իսլամութեան հետ, դադարում է պատկանելէ իր ընկերականութեան թէ ազգայնօրէն և թէ բարոյապէս. նոյնպէս և Ռուսիայում մի Հայ կամ Թուրք մարդ, որ իր բարոյական կեանքը փոխեց ռուսականին հետ, էլ բոլորովին դադարեց պատկանելէ՝ իր ազգային կամ բարոյական ընկերականութեան. Պարսկաստանումը ոչ թէ միայն Հայ մարդ, այլ որ և է աշխարհի մարդ բոլորովին կորցնում է իր նախնական կերպարանքը։ Թէ եւրոպական տէրութեանց մէջ եղող Հայք ինչպէս են պահում իրանց ազգային բարոյական և քաղաքային ընկերականութեան կերպարանքներն՝ արդէն մերայնոց շատերուն յայտնի է։ (¹)

Արեւմն այսօր մեր Հայոց ընկերականութիւնը ազգային լինելէ յառաջ է մի միայն բարոյական, որովհետև իր գլխաւոր տարրքն է հոգևոր բան. ենկեղեցի, որ մեզ տալիս է Աւետա-

(¹) Տես Կռունկ Հայոց աշխարհի հանդիսի 1861 թուի Ը. թուին մէջ « Մըտածմունք Հայոց ազգային եւ բարոյական զարգացման վրայ » յօդուածը:

բանի լոյսը, աստուածային օրէնքը. իր առաքելականութեամբը պահած է իր մէջ և մեր նախնական ազգայնութեան տարրերը, այն է մեր ազգային պատմութիւնը, մեր հոգևոր աւանդութիւնքը, մեր Եկեղեցւոյ կարգերն ու կանոնները, մեր պաշտամանց ծեսերն ու արարողութիւնքը, մեր սրբազան և աշխարհիկ լեզուները, դպրութիւնք և գրականութիւն, մի խօսքով Հայաստանեայց սուրբ և առաքելական Եկեղեցւոյ ինքնագոյութիւնը։

Ուստի, այսօր Հայոց ընկերականութեան հոգին ու կեանքն է՝ իւր Եկեղեցին իւր կաթողիկոսական իշխանութեան անկախութեամբը. արդ՝ ով որ կդպչի նրա կեանքին, ով որ կուզէ սպանանել նրան հոգին թէ և մեր արիւնէն լինի, մեր եղբայրը, ինչպէս են մեր պապական, բողոքական և ուրիշ այլադաւան ազգայինք, թէ և լինի այդ մեր կեանքը փչացնողն ու հոգին սպանողը, մի հզօր տէրութիւն, ինչպէս է Ռուսաց կայսրութիւնը, մեր ամենամեծ թշնամին կճանաչենք նրանից և կպաշտպանենք մենք մեր կեանքն ու հոգին մինչ մեր վերջին արեան կաթիլը։ Այս առաջին անգամ չէ, որ մեր բարոյական կեանքը տագնապումն է գլանըւում, քանի անգամ որ սրա օրինակը մեր պատմութեան մէջ տեսել ենք, այնքան անգամ էլ երևել է զարթելը մեր պապերու սրտերումը Աստուածային ձայնի, որ նրան, հոգւոյն զօրութիւն և խելքին ուժ է տուել։ Երբ մեր պապերը քաղաքային ընկերականութեան գոյութիւնը կորցրել են, բարոյականին մէջն են եղել ապաստան, բայց երբ այդ բարոյական գոյութիւնն էլ եղել է վտանգումը, Աստուծոյ են միայն ապաւինել, Աստուած է եղել միայն մեր գոյութեան ազատիչը. ինչպէս կասէ մեր Հայաստանեայց եկեղեցւոյ ամենամեծ սուրբ Կաթողիկոսներէն մէկը (1) « Այլ եմք իբրև զայծեամն յորսորդաց և ի շանց փախուցեալք ի քարանձաւս յայս բնակելով՝ յորում ոչ և մարմնական հարկաւոր պիտոյիւք շատացեալք ի գիւղից կամ յագարակաց, յորոց ունիմք և ոչ մի ։ Նաև ոչ անդաստան հողոյ զի վաստակօք և աշխատութեամբ զպէտս մեր լնուաք և ոչ օգնութիւն ուստէք որպէս արժան էր ի թագաւորաց և յիշխանաց ի Քրիստոս հա-

(1) Ներսէս Շնորհալի :

ւատայելոց․ այլ միայն ի Տեառնէ Աստուծոյ , նայլն ․ ․ ․ ։ »

Այս մեր պատմական հանգամանքը Հայաստանեայց եկեղեցւոյ ամեն զաւակներուն ծանօթ պէտք է լինի, որոնք իրանց և իրանց ազգին կճանաչեն։ Ասիայում քաղաքային կեանքը երբէք գերազանց չէ եղել բարոյական կեանքէն, հոգևոր կեանքը շատ տարբեր է եղել մարմնաւորէն քրիստոնէութեան ժամանակ, ինչպէս նաև մինչև այսօր։ Ասիոյ քրիստոնեայ ժողովուրդներէն ամենէն աւելի Հայոց ժողովուրդն է զգացել այս բանը, և քանի անգամ որ իր ջանքն արել է այս կեանքը վայելելու՝ յաջողել է․ բայց ժամանակը նրա վրայ մարմնաւորն է բերել, հենց այս մարմնաւոր կեանքումն է որ շատ անգամ մոլորուել է կամ մոռացել է բարի բան գործելու․ բարի բան գործելու ազգային կամ քաղաքային ընկերականութեան համար, Հայը սէր ունեցել է, բայց միջոցները միշտ իրան պակասել են։ Իր մարմնաւոր վայելմունքը հոգևոր շնորհքներէն յառաջ գալով (1) իր քաղաքային ընկերականութիւնը բոլորովին տարբեր կերպարանքով է եղել իր բնակած աշխարհին յարևան եղող ազգերու քաղաքային կեանքէն․ այս մեծ պատճառ էր եղել միշտ որս լինելու մեր ազգն ու աշխարհը՝ նոյն շնորհքը չունեցող ազգերու ասպատակութեանց և աւազակութեանց։

Անց կացան գնային ասպատակութեանց և աւազակութեանց ժամանակները․ կողոպտեցին, թալանեցին մեզ ազգային և քաղաքային մարմնաւոր մեծութենէ և ճոխութենէ, բայց նրանց տեղ այսօր խղճի, հոգւոյ, կրօնի և մտքի ազատականութեան ժամանակ տակաւին անհեզ որկորներ են բաց արած կանգնած-

(1) Առաջին եւ գլխաւորն է Հայոց ընտանեկան կեանքը, այս կեանքը վայելելու համար առաջին հարկաւորն է աշխատանք. ամենուն յայտնի է որ Հայք ինչ կերպով տուած են եղել իրանց երկրագործութեան եւ վաճառականութեան, որք են աղբիւր նիւթական հարստութեան. այս հանգամանքը ցոյց կտայ, որ ընտանեկան կեանքը Հայոց ազգային գոյութեան մի մեծ տարերքն է եղել. գիտենան ուրեմն լուսաւորութեան մեր նոր վարդապետները թէ որ՞չափ պարտական ենք Հայաստանեայց եկեղեցւոյն ամուսնութիւն կամ պսակը իբրեւ խորհուրդ Եկեղեցւոյ պահպանելուն մեր մէջ:

մեր գլխին վրայ կուլ տալու մեր ազգային բարոյական ազատութիւնը . այն է Հայաստանեայց եկեղեցին, պապական կլանող տարերքը Թուրքիայում. Ռուսական սպառեցնող զէնքը բուն Հայաստանում ։ Որո՞ւ ապաւինինք , որո՞ւ դիմենք , միա՛յն Աստուծոյ , հաւատալով որ նա է միայն մեր այսօրուայ գոյութեան պատճառ, միայն այն սիրոյն՝ գիտենալով որ մեզ բարի բան անել կտայ, միայն այն խոհականութեան՝ յուսալով որ մեզ շնորք կտայ մեզ ճանաչելու, մեզ ճանաչելով՝ մեր Թերութիւնը գիտենալու, մեր Թերութիւնը գիտենալով՝ մեզ մի դարման անելու Օսմանեան բարեխնամ և բարեգութ Սուլթանի տէրութեան մէջ և հովանաւորութեան տակ ։

ՄԱՐԿՈՍ ԱՂԱԲԷԳԵԱՆ

Կ. Պօլիս 1865 հոկտ. 3



## ՔՆՆՈՒԹԻՒՆ

# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ

(*Պալաժենիայի*)

**Որնոր 1836 թուին**

*Ռուսաց տէրութիւնն է տուել Հայաստանեայց Եկեղեցւոյ վարչութեան համար, ի Ռուսաստան.*

—

ԱԶԳԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

(*Կաթողիկոսական դիւանէն հանուած*)

*Երբ փոքր առ փոքր սկսան երեւել Պարսից և Ռուսաց մէջ պատերազմի նշանները, Տփխիսու վիճակաւոր առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսը, իսկոյն քարոզիչներ ուղարկեց Պարսկաստանի Հայաբնակ գաւառները, որ յորդորեն այն տեղ բնակուած հայոց ժողովուրդը պատերազմի ժամանակ ներգործել Ռուսաց տէրութեան օգտին համար: Այսպիսի հոգևոր պաշտօնակատարներէն մինն էր երևելի քարոզիչ աւագ քահանայ Տէր Մելքիսէդէկ Ղամազեանցը, որ իսկ այս նպատակով Էջմիածին էր ուղարկուած՝ կամելով խափանել Պարսից տէրութեան ազդեցութիւնը Հայոց վրայ: Ներսէս առաջնորդը համոզեց Եփրէմ կաթուղիկոսին ազգի օգտի համար՝ դուրս գալ Էջմիածնէն և գնալ Հաղբատու վանքը. որն որ պատկանում է Տփխիսու վիճակին: Կաթուղիկոսը կատարեց այդ պահանջմունքը ու վեր կեցաւ գնաց Հաղբատ. բայց, ինչպէս մենք լըսել ենք ականատեսներէ, բաւական չէր նա այն տեղ իր դրութեամբը:*

*Չըգիտենք զգում էր արդեօք Կաթողիկոսի սիրտը, թէ նրա ազգը պիտի հանդիպի մեծամեծ թշուառութեանց և կամ թէ երկբայում էր նա որ Ռուսաց տէրութիւնը չկատարէ իր Ներսէսին տուած խոստմունքները, այսինքն անկախութիւն տալ Հայաստանին իւր հովանաւորութեան տակ: Յայտնի է միայն*

թէ ալեզարդ ծերունին անդադար անհանգստութեան մէջ էր :

Թնդանօթներու գոռումը, ժողովրդեան շարժումը, ազդարին արդէն բոլոր երկրին, թէ վերջացան հաշտութեան և խաղաղութեան օրերը: Հայերն իրանց Եկեղեցւոյ հրաւէրը լսելով՝ ուրախ սրտով գնում էին իրանց զինուորական գնդերը մտնելու: Այս ազգային սպառազինութեան օրերը միևնոյն ժամանակ խնդութեան և ցնծութեան օրեր էին, այս զուարթասիրտ բազմութեան մէջէն դուրս էին գալի հրաշալուր ձայներ, որոց արձագանքը տարածւում էր Տփխիսու զարնանային օդումը, փրկութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ, ազատութիւն, անկախութիւն Հայաստանի: Որքան կեանք զարթեցրին Հայոց ազգի մէջ այս հիացուցիչ ձայները և որքան կեանք դէպի անդարձ կորուստ մատնեցին: Բայց չեն դադարիլ այդ հրաշալուր ձայները անցնող սերունդի հետ, ոչ, կատարուելու են նրանք մի օր. կգան, կանցնին սերունդներ մի, երկու, երեք ճգնութեամբ և մարտիրոսութեամբ, ճակատի քրտինքով ոռոգելով Հայաստանի հոգևոր երկիրը. բայց ազգի իրաւունքը դէպի ազատութիւն և անկախութիւն կմնայ միշտ և յաւիտեան: Մի ազգ, որ ունի իր յիշատակներն անցելումը, հայրենասիրութիւն ներկայումը, նա ունի իրաւունք յուսալ ապագայումն իր ազատութիւնն ու անկախութիւնը: Հայրենասիրութիւնը ցնորք չէ, մարդկանցմէ հնարուած բան չէ. նա կարող է երբեմն խաբէական յոյսեր ունենալ. կարող է և երբեմն խաբուիլ. կարող է երբեմն նաև մատնուիլ. կարելի է նրան խանգարել, մոլորել, բայց բոլորովին ոչնչացնել անհնարին բան է: Ամեն ազգի մէջ, լուսաւորութեան ամեն աստիճանի մէջ՝ հայրենասիրութիւնը յայտնուում է իբրև մարդուս հոգւոյ մի բնական զօրութիւն, որ աճելով խորտակում է բռնակալութեան ուժը: Մի ազգի առանձնութիւնը իր սեփհական իրաւունքն է կեանքի համար, այն իրաւունքը, որ Աստուած բնաւորել է մարդուս սրտի մէջ: Հզօր և ազդու զանազանութիւնքը, որովք բաժանուում են իրարմէ կլիմաները տոհմերը.

բարքերը, լեզուները և այլն, միշտ կարող են ընդդիմանալ ազգերու բռնաւորօրէն միաւորութեանը: Ազգերու առանձնութիւնը մարդկութեան օրէնքն է և նրա հոգևոր հարստութիւնն է գոյացընում:

Ազգային 1826 թուին շարժման գլուխն էր Ներսէս եպիսկոպոս Աշտարակեցին, առաջնորդ Տփխիսու: Նա որ այդ շարժումը գրգռել էր և նրա վարիչն էր, վառուած ոգևորած իբրև սուրբ պարտականութիւն, նրա հայրենասիրութիւնը կարող չեղաւ լեցնել իր պակասութիւնը քաղաքագիտութեան և մարդկանց ճանաչողութեան մէջ: Նա չունէր այն ձիրքը, որ բոլոր պարագաներն իր ազգի օգտի համար գործածէր: Պասկևիչ, Երմոլովի զօրապետներու խառնակութեանց մէջ, կարող չեղաւ նա, ոչ մնալ անկախ այդ խառնակութեններէն և ոչ ընտրել այն կողմը, որմէ աւելի կարելի էր ազգային օգուտ քաղել: Վստահ եղած գործի յաջողմանը վրայ, զուցէ և քաջալերուած Երմոլովէն և Գրաֆ Բէնկէնդորֆէն նա մի գիր գրեց ժանդարմներու պետ Գրաֆ Բէնկէնդորֆին, որու մէջ մեղադրում էր Պասկևիչին: Այդ նամակը ներկայացուցին Կայսեր, որ իր վստահութիւնը Պասկևիչին վրայ ցոյց տալու համար նոյն նամակը ուղարկեց նրան և հրամայեց փափկութեամբ վարուիլ Ներսէսի հետ, համարելով նրան Հայոց ազգի վրայ ազդեցութիւն ունեցող անձ: Պասկևիչը ծածկեց իւր թշնամութիւնը Ներսէսի դէմ մինչև Պարսից պատերազմի վերջը, մտքումը պահելով, որ յետոյ ժամ պարապոյ գտած՝ իր վրէժխնդրութիւնը կհանէ Ներսէսէն և նրա ազգէն: Վառվռուն հայրենասէր Ներսէսը ոգևորեց բոլոր ազգը իր ոգևորութեամբ: Ազգի հետ միասին նա դիմում էր ամեն վտանգաւոր գործողութեանց մէջն· միշտ ռուսական առաջնապահ զօրքին մէջ, ամենաստոյգ տեղեկութիւն էր ստանում Պարսկական զօրքի պատրաստութեանց և շարժողութեանց մասին: Հայոց ազգի ոչ կեանքն էր խնայում և ոչ ստացուածքը Ռուսաց զէնքի յաջողութեան համար: Բաց էր անում Հայոց շտեմարանները և բոլոր հացը

բաժանում էր այն զօրքին, որ եկել էր Հայաստանն ազատելու։ «Ես ինչս լսում էի, կասէր երբեմն ծերունազարդ հովիւը, ժողովրդեան տրտունջը, երբ առնում էի նրամէն հացը՝ սոված ու քաղցած զօրքի համար և զրկում էի իմ ազգայնոց ամենօրեայ հացէն։» Բայց մօտեցած յոյսը Հայաստանի փրկութեան և ազատութեան համար ուժ և կարողութիւն էր տալի Ներսէսին և նրա ազգին, որ տանին այդ զրկողութիւնը Ռուսաց յաջողութեան համար։ Պատմութիւնը կբացայայտէ ապագայ սերնդին՝ թէ որքան երախտիք ունի Ներսէս իր ազգի հետ միասին Ռուսաց յաջողութեան մէջ։ Այն յոյսը թէ Հայոց երկրին տիրելուց յետոյ, նա պիտի լինի անկախ՝ մխիթարում էր ու քաջալերում էր Ներսէսին և Հայոց ազգին այդ ծանր պարագայի մէջ։ Քանի քանի անգամ Ներսէս իր խօսակցութեան մէջ անցեալոյն մասին յիշում էր այն թուղթը, որնոր միշտ ծոցումն էր պահում իբրև տէրութենական (դիպլօմատիք) վկայագիր Ռուսաց տէրութենէն Հայաստանի ազատութեան մասին։ Յայտնի չէ, ուր մնաց այդ թուղթին։ Հաւանական է, որ Սարգիս եպիսկոպոսն Ջալալեանց կորզած լինի այն՝ հանգուցեալ Ներսէսի ծոցէն և տուած փոխարքայ Բարեատինսկոյն ի նշան իր հաւատարմութեան ի նպաստ Ռուսաց նպատակներուն, որոց մէջ յայտնի են նենգութիւնքը Հայոց Եկեղեցւոյ անկախութեան դէմ։ (*)

Վերջապէս ժողովրդեան աղմուկն ու զէնքերու դղրդիւնքը

---

(*) Պէտք է իմանալ, որ Ներսէս Կաթողիկոսի վախճանելուց յետոյ, փոխարքայ Բարեատինսկին՝ ընդէմ սեփհականութեան իրաւանց և սահմանադրութեան 32րդ յօդուածին մասնաւորապէս Ջալալեանց Սարգիս եպիսկոպոսի միջնորդութեամբ Ներսէսի բոլոր թղթերն ու գրագրութիւնքը յափշտակեց՝ յուսալով նրանց մէջ գտնել որ և է հետք նրա թղթակցութեան Օսմանեան տէրութեան հետ, որոց մասին կասկածանքի մէջ էր։ Բայց բացի իր բարբարոսութենէն ոչ ինչ չգտաւ և երբոր Էջմիածնի սինոդը ուղարկեց Մակար եպիսկոպոսն ի Տփխիս, որ ապացուցանէ Սարգսի անիրաւ գործը, փոքր զարմանք չէր սինոդի համար լսել փոխարքայի պատասխանը թէ «Սարգիսը իմ հրամանովն է գործել այդ։»

դադարեցան, Հայոց երկիրն ազատուեցաւ Պարսից ձեռնէն և նոյն ժամուն Ներսէս արքեպիսկոպոսը խօսք ըցեց իր ազգի իրաւանց մասին, յիշեց տէրութեան խոստմունքը, այն է անկախութիւն շնորհել Հայոց երկրին Ռուսաց կայսեր հովանաւորութեան ներքև: Նրա պատասխանն այն եղաւ որ համաձայն կայսեր բարձրագոյն կամացը հրաւիրեցին նրան գնալ Պետերբուրգ կայսեր հետ անձամբ տեսնուելու: Ներսէսը սիրտը յուսով լցուած դուրս եկաւ Տփխիսէն դէպ ի Ռուսիա: Այն ինչ անցել էր նա Դօն գետը՝ նորէն հրաման հասաւ նրան Արքայումը գնալ Բէսարաբիա և լինել այն տեղ վիճակաւոր առաջնորդ: Տասնուչորս տարի մնաց նա այդ աքսորի մէջ և հազիւ 1843 Թուին Յովհաննէս Կաթողիկոսի մահուց յետոյ բոլոր ազգի միաբան հաւանութեամբ Կաթողիկոս ընտրուեցաւ: Կայսերական ողորմածութիւնը չվերջացաւ Ներսէսին Բէսարաբիա աքսորելով, Պասկևիչի անձնական Թշնամութիւնը Ներսէսի դէմ աւելի դէնը տարածեցին նրա հալածանքը, բոլոր իւր Թըշնամութիւնը Թափեց նա խեղճ գաղթականներու վրայ: Հարիւր հազար հոգի Ռուսաց տէրութեան և իրանց սեփհական հոգևոր հովիւներու հրաւէրովն Թողեցին իրանց տները, գիւղօրայքը և չուարին Պարսկաստանէն, որ գան ու բնակուին Հայոց երկրումը: Ամիսներ անեցին, մինչև որ տուն տեղ տուին այդ խեղճերուն: Ամիսներով մնացին նրանք չոր ու ցամաք երկրի վրայ, տօԹակէզ լինելով արևու տակ: Հազար հազարներ մեռնում էին այն ժողովրդէն, որ ոչ կեանք էր խնայել և ոչ ստացուածք Ռուսաց զէնքի փառաւորութեան համար, Թէ որ մէկ քանիսն ունէին դեռ ևս փոքր ինչ կարողութիւն և զօրութիւն ճանապարհորդութեան, սրտները կոտրուած, կրկին յետ էին դառնում Պարսկաստան: Իսկ տկարները և խեղճերը կարող չլինելով իրանց եղբարց քամակէն գնալ՝ զոհ դարձան Պասկևիչի անգԹութեանը: Ահա այսպիսի սև երախտագիտութիւն ցոյց տուաւ Ռուսաց տէրութիւնը ինչպէս Ներսէսին, որու օգնութեամբ այնքան յաջողուել էր, նոյնպէս և Հայոց ազգին, որ

յետ չքաշուեցաւ, ոչ մի գոհի առաջն, Ռուսաց զօրքի համար: « Մանկ մեզք կայ իմ հոգւոյս վրայ, ագղիս առջև, կասէր շատ անգամ ազգասէր Կաթողիկոսը բացասիրտ խօսած ժամանակը, այդ մեղքը Հայկազեան զաղթութիւնն է : » Այս խօսքերէն յետոյ, որոնք կարծես թէ նրա հոգւոյն խորքէն բռնութեամբ էին դուրս գալի. երկար մնում էր նա գլուխը քաշ արած անմռունչ ու անշարժ, այսպիսի դրութեան մէջ տեսնելով նրան կարելի էր միտ բերել ծերունի Պրիամոսին՝ որ ծնկի վրայ կանգնած խնդրում էր Աքիլլեսէն իր սպանուած որդւոյ Հէկտորի մարմինը. Ներսէս այդ րոպէներումը նմանապէս ծունր էր իջանում իր ազգի առջև, նմանապէս խնդրում էր նրամէն, բայց ոչ թէ մարմիններ իր որդւոց՝ որոնք զոհ էին գնացել Պասկևիչի վրէժխնդրութեանը, այլ իր ազգի մեծահոգութեան արտասունքը իրանց դժբաղդ հոլովին համար : Անտարակոյս ոչ ազգի արտասունքը կցումաքին և ոչ վեհանձնութեան զգացմունքը կպակասին մի այնպիսի ոգևորուած հայրենասիրի համար, ինչպէս էր Ներսէս :

Պասկևիչի թշնամութիւնը չբաւականացաւ այդ զոհերով էլ, նրան հարկաւոր էր կործանել Հայոց հոգևոր ամրոցը, այսինքն նրա Եկեղեցւոյ անկախութիւնը և Կաթողիկոսական իշխանութիւնը : Այս նպատակին համար նրա հրամանով Տփխիսումը կազմուեցաւ մի յանձնաժողով, որ պէտք էր ուրուագիր պատրաստել Հայաստանեայց եկեղեցւոյ վարչութեան համար: Յանձնաժողովին տուած յանձնարարական խորհուրդները մենք կարդացել ենք, բայց բառ առ բառ չունինք մտներումս և կարող ենք միայն նրանց նպատակը բացատրել, որ էր սահմանադրութիւն յօրինել համաձայն նախնի օրինաց և աւանդութեանց Հայաստանեայց եկեղեցւոյն, աչքի առջև ունենալով սահմանափակել Կաթողիկոսի իշխանութիւնը, սինոդոս կազմել նրա մօտ, որ խափանարար լինի նրա իշխանութեանը, զրկել Կաթողիկոսին փողի գումարների տեսչութեան իրաւունքէն, այն գումարների, որոնք Եկեղեցեաց և Էջմիածնայ գոյքն

են. ստորադրել Ռուսաց տէրութեան, նուազեցնել Հայաստանեայց եկեղեցւոյ անկախութիւնը, մի խօսքով հաղորդուած խորհուրդներէն ակներև էր թէ՝ ինչ հոգւով պէտք էր պատրաստուէր այն սահմանադրութեան ուրուագիրը, որով ոչ թէ կառավարելու էին եկեղեցիքը, այլ հարկաւ կործանուելու էր նրա անկախութիւնը: Անա այսպիսի հոգւով, այսպիսի ուղղութեամբ էր յղացած յանձնաժողովը, որոյ անդամներն էին՝ պապական Հայ Ճահանջրպետը, պապականութենէ Հայաստանեայց Եկեղեցւոյ ծոցը նոր դարձած Սէրովբէ վարդապետը, Կօլլէժսկի Ասեսօր Ռուս Օղկինը, և ցաւալի է ասել, մի Հայկազն կեներալ, որ յետ բազմամեայ աշխատութեան, Ռուսաց և Հայոց եկեղեցիքն միաւորելոյ համար, մահագուշակ հիւանդութեան մէջ 1858 թըվին Յունուարի 7ին գրում էր իշխան Յովհաննէս Լազարեանցին, որ ստացաւ այս նամակը նմանապէս մերձ իմահ եղած ժամանակը թէ՝ «Տասնուչորս տարուայ Ներսէսի Կաթողիկոսութիւնը բոլորովին անօգուտ անցաւ Ռուսաց տէրութեան համար:» Յիշեալ Հայկազնը, կեներալ կնիազ Բէհբութովն էր: Յանձնաժողովը պատրաստեց սահմանադրութիւնը և նրա մէջ հաստատեց մի գերագոյն վարչութիւն, որոյ իշխանութիւնը բարձըր էր քան Կաթողիկոսի իշխանութիւնը և որոյ իրաւունքին ենթարկուում էր Կաթողիկոսը: Պասկևիչը յուղարկեց այս սահմանադրութիւնը այն ժամանակուայ ներքին գործոց պաշտօնեայ Գրաֆ Բլուդովին: Սահմանադրութեան հոգին և ուղղութիւնը չափէն դուրս յարձակողական երևեցաւ Պետերբուրգի դահլճին և այս պատճառով Կայսրը հրամայեց առանձին ժողով կազմել Պետերբուրգումը այս սահմանադրութիւնը նորէն ծրագրելու համար: Ժողովի անդամներն եղան Մինիստր Բոզնովն, Մինիստր Նեսելրօդն, Ասիական տէպարտամէնտի տիրէքթօր, Հայոց երդուած թշնամին, Յոյն Ռօտօֆենմէնկինը և ժանդարմէրու պետ Գրաֆ Բէնկէնդօրֆը: Այս վերջինը ժողովի մէջ բերաւ մի առանձին գրութիւն, որոյ մէջ նրա կարծիքով սահմանադրութեան հոգին պէտք էր աւելի մարդասիրա-

կան լինէր, որն որ չէր կամենում Պասկևիչը, և այս գործի մէջ աւելի բռնաւոր յայտնուեցաւ, քան ինքն Նիկողայոս կայսրը: Այս տեղ մեր միտն է գալի Լուդովիկոս ԺԸ ի խօսքը որն որ ասաց Կոնսէրվատօրների համար, թէ' ils sont plus conservateurs que leur roi: Այս խօսքերը կարծես թէ կարող են համարուիլ մի խորհրդանշան բոլոր ստրուկներու համար: Ահա այսպիսի ձեռներէ ստացաւ Հայաստանեայց սուրբ և առաքելական Եկեղեցին 1836 թուին իր վարչութիւնը, կամ լաւ ևս է ասել իր կործանման կարգադրութիւնը:

Սահմանադրութիւնը բաժանվում է 10 գլուխ կամ 141 յօդուած: Մենք քննութեան տակ կձգենք այն յօդուածները միայն, որոց մէջ աւելի ակներև է գլխաւոր նպատակը, այսինքն կործանումն մեր Եկեղեցւոյ անկախութեան և ինքնագոյութեան, թէ և հազիւ կգտնուի այնպիսի յօդուած, որոյ մէջ չլինի գէթ կողմնակի ակնարկութիւն ընդդէմ Եկեղեցւոյ:

Քրիստոսի ուսման հետ միասին, Հայոց պատմութեան մէջ յայտնուում է մի նոր իշխանութիւն, որմէ յառաջ է գալի, կեանքի նոր սկզբունք. —Սկզբունք սիրոյ եւ ազատութեան:— Այդ իշխանութիւնը Կաթողիկոսի իշխանութիւնն է: Սա ծագել է Թադէոս և Բարդուղոմէոս առաքելոց և սուրբ Գրիգոր Լուսաւորչի չարչարանքէն. և ամբողջ հաւատարմութեամբ նրանց կեանքի սկզբունքներուն, նրանց դրօշի տակ, հազարամեայ ժամանակէ իվեր շարունակում է արևելքում իր պատերազմը, հաւատոյ և խղճի ազատութեան համար: Կաթողիկոսը զինուորուած ամբողջ Հայոց ազգի երաշխաւորութեամբ, Աստուածային ուսման երկայրի սրով, քրիստոնէութեան առաջին դարերէն սկսած երևում է թագաւորներու գահին մօտ իբրև պահապան և պաշտպան Հայոց ազգի հոգևոր և բարոյական օգտին: Այս իշխանութիւնը մինչև մեր օրերը պահպանել է իր ազգի ծագումը: Հայոց Կաթողիկոսը, ինչպէս նախնի դարերումը, ընտրուում է բոլոր ազգէն, ինչպէս որ ընտրուում էին ուրիշ ազգերու Պատրիարքներն ու Հռոմայ Պապերն էլ: Կա-

Թողիկոսի մէջ անձնաւորուած է հոգևորապէս ամբողջ ազգը, որոյ յանձնել է իր Եկեղեցւոյ վարչութիւնը և պատասխանատու է կացուցել Աստուծոյ և իր առաջը: 1836 Թուի Սահմանադրութիւնը. համաձայն նախնի կարգերու և կանոններու Հայաստանեայց եկեղեցւոյ, Բ. Գլուխ 10դ յօդուածումը ասում է:

« Գլխաւոր կառավարչութիւն Եկեղեցւոյ Լուսաւորչական Հայոց և ծայրագոյն վերատեսչութիւն Եկեղեցականաց նորին, ըստ նմին և ճիշդ պահպանութիւն կանոնաց և արարողութեանց այնր դաւանութեան՝ վերաբերի առ Պատրիարքն Էջմիածնի, իբրու առ գլխաւոր Կաթողիկոսն ազգին Հայոց.»

Այս խօսքերու մէջ ուղիղ և հասկանալի է Կաթողիկոսի իշխանութեան նշանակութիւնը, Հայոց ազգը պահպանել է այդ իշխանութիւնը դարաւոր խռովութեանց և յեղափոխութեանց մէջ, իբրև նշան իր իրաւանց, իր հաւատոյ և խղճի ազատութեան: Եկեղեցւոյ վարչական իշխանութեան միութիւնը նրա կարևոր և էական յատկութիւնն է, բայց որպէսզի հոգևոր, այսինքն, Կաթողիկոսի իշխանութիւնը իր օգուտն ազգի օգտէն չըջոկէ, ինչպէս տեսնում ենք այդ Արևմտեան երկիրներումը, Հռովմէական հոգևորականներու մէջ, ազգն իր ընտրողական իրաւունքով հեռացնում է նրանէն այդ անպատեհութիւնը՝ որ կարող էր յառաջ գալ նրա սխալմունքէն ի վնաս Եկեղեցւոյ և ազգի, և Հայոց ազգը հին ժամանակներէն սկսած, ընտրելով հոգևորականներու երբեմն և աշխարհականներու մէջէն մի արժանաւոր անձն այդ գերագոյն պարտաւորութեան համար, միշտ տալիս է նրան ամբողջ իրաւունք Եկեկեցւոյ վարչութեան, համաձայն Աւետարանի ուսման իր Եկեղեցւոյ աւանդութեանց և ազգի օգտին. և պատասխանատու է կանգնեցնում նրան, ինչպէս ասացինք, առաջի Աստուծոյ և ազգի:

Սահմանադրութեան 10դ յօդուածի մէջ ընդունելով Կաթողիկոսին համաձայն նախնի օրինադրութեանց, Պետ եկեղեցականաց վարչութեան. Գ. Գլուխը 33դ յօդուածի մէջ խորտակում է այդ իշխանութիւնը, հաստատելով նրա մօտ մի նոր

իշխանութիւն, անծանօթ Հայոց եկեղեցւոյ վարչութեան մէջ. որ է Սինօդի իշխանութիւնը: Կարգադրութեան մէջ Սինօդը յայտնւում է իբրև ընդդիմակաց և խափանարար, լաւ ևս է ասել կործանիչ կաթողիկոսական պետութեան. Գ. Գլխումը 34դ յօդուածում, կարգադրութիւնը տալիս է Սինօդին ութն անդամ « Ի չորից արքեպիսկոպոսաց կամ եպիսկոպոսաց՝ հանապազ յԱթոռն Էջմիածնի բնակելոց և ի նոյնաթիւ վարդապետաց: »

35դ և 36դ յօդուածներու մէջ Սինօդի իրաւասութեան և տեսչութեան ստորադրում է հոգևոր իշխանութիւնը. իսկ 46դ յօդուածի մէջ ասած է, « Սինհոդոսն Լուսաւորչական Հայոց Էջմիածնի ներգործէ առհասարակ ըստ իրաւանց հանապազօր անդամոց ի մի ատեան ժողովելոց (Գոլլէկիա) : Զայն նորին (Կաթողիկոսի) իբրև նախագահի իզուգահաւասարազոյն ձայնից ունի զծանր կշիռ առաւելութեան: »

Հարցնում ենք այս ինչ Սինոդ է, ով է տուել նրան այդ իրաւունքը Եկեղեցւոյ վրայ, ազգն է տուել արդեօք, ոչ երբէք, ազգը միայն Կաթողիկոսն է ընտրում և միայն նրան է յանձնում իւր Եկեղեցւոյ վարչութիւնը: Կաթողիկոսն ինքն է նշանակել, ամենևին ոչ. որովհետև այդ կնշանակէր ընդդէմ իր իրաւանց գործել և իր իշխանութիւնը կործանել: Ռուսաց կայսրն է տըւել. բայց նա աւելի գեղեցիկ կըգործէր, եթէ իր ազգի մէջ յայտնի իմաստուն առակի զօրութեամբ շարժէր, այսինքն ուրիշի վանքը իր կարգադրութեամբ չմտնէր: Հայոց Կաթողիկոսն ոչ թէ միայն ծանր գործերու մէջ, այլ փոքր ի շատէ դըժուարալոյծ բաներու մէջ էլ միշտ խորհրդակցութիւն էր անում եպիսկոպոսներու և այլ եկեղեցական կամ աշխարհական անձինքներու հետ, նայելով հանգամանքին թէ՝ որու խորհուրդները կարևոր կլինէին նրան կամ օգտակար: Բայց այդ խորհուրդները պարտաւորական չէին նրա համար, որովհետև թէ որ նա ինքն է պատասխանատու իր եկեղեցական հոգևոր վարչութեան. ուրեմն ինքը պիտի ունենայ ըստ ճիշդ պահանջման Նախնի օրէնադրութեանց, և վճռական իրաւունք եկեղեցական

և հոգևոր գործերու վրայ: Այսպիսի իրաւանց վրայ հիմնուած լինելով, Կաթողիկոսը ժամանակ առ ժամանակ խորհրդակցութեան ժողով էր նշանակում, երբ հարկաւորութիւն էր զգում որ և է ձեռնտուութեան ծանր հանգամանքներու մէջ և այս ժողովները բաղկանում էին ոչ թէ ութ անդամներով, ինչպէս պահանջում է 1836 թուի սահմանադրութիւնը, այլ բազմաթիւ հոգևորական և աշխարհական ծերունիներով, այսինքն եպիսկոպոսներով, ազնուականներով և արհեստականներով ևայլն: Այդպիսի դիպուածներում ազգի ներկայացնողը խորհրդակցում էր իր ազգի հետ: — Պարտաւորութիւնը իրաւանց հետ —: Նոյն իսկ 10դ յօդուածի շարայարութեան մէջ ասած է,

« Պատրիարքն յոչինչ դէպս չզօրէ անձին ումեք փոխանցել իշխանութիւն իւր:» Այս յօդուածն ամենևին ընդդէմ է հոգևոր կանոնադրութեանց, որովք Կաթողիկոսն իրաւունք ունի եպիսկոպոսներու մէջէն ընտրել մէկին իրան Տեղապահ, որ բոլոր ազգին յայտնի է լինում այս անունով, և Կաթողիկոսին որ և է պատճառով Էջմիածնէն բացակայութեան ժամանակ՝ վարում է նորա պաշտօնը:

Մի կարծէք թէ սահմանադրութեան բոլոր յօդուածները զըրկողութիւն են հասուցանում Կաթողիկոսի իշխանութեանը. ոչ երբէք. զի ահա 25դ յօդուածը մի այնպիսի իրաւունք է տալի նրան, որոյ մասին ոչ միայն երբէք չէր մտածել ոչ մի Կաթողիկոս, այլ և մտածելն անգամ թուի թէ յանցանք պէտք էր որ համարուէր: Յիշեալ յօդուածը որպէս թէ կամելով վարձատրել Կաթողիկոսին նրա իրաւանց և իշխանութեան զրկողութեանց փոխարէն՝ տալիս է նրան մի չլսուած իրաւունք:

« Իբրև հրահանգ ունելով ինքեան զնախկին կանոնադրութիւնս Եկեղեցւոյ Լուսաւորչական Հայոց և հաստատեալ յառաջագոյն կարծեաց սինհոդոսին Էջմիածնի այնր դաւանութեան Պատրիարքն որոշէ վճռաբար զամենայն հոգևոր գործս՝ վերաբերեալս՝ ի դաւանութիւն հաւատոյ յԱստուածային պաշտամունս և ի սոցին նմանս:»

Իսկ 37դ յօդուածի մէջ նոյն իրաւունքը տալիս է նմանապէս և Սինոդին ասելով, «Սիւնհոդոսն Լուսաւորչական Հայոց կալով ընդ անմիջական տեսչութեամբ ծայրագոյն Պատրիարքին՝ աւարտաքար վճռէ զամենայն գործս՝ վերաբերեալս առ վարդապետութիւնս հաւատոյ ի պաշտօնատարութիւնս Աստուածային, յեկեղեցական արարողութիւնս և ի սոցին նմանս:»

Այս տեղ Կարգադրութեան յօրինողները բոլորովին ցնորքի մէջն են ընկել. Եկեղեցւոյ հաստատութեան սկզբէն մինչև այժմ ոչ ինչ տեղ, ոչ մի ժամանակ, ոչ մի մարդէ տուուած չէ այսպիսի օրէնք, որ մի Պատրիարք ութ եպիսկոպոսով, որոնց կարգադրութիւնը Սինոդ է կոչում, համարձակուէր փոփոխել Եկեղեցւոյ դաւանութիւնը կամ արարողութիւնը: Եթէ մի այդպիսի անմիտ երևել է, Եկեղեցին արտաքսել է նրան, որպէս աղ, որ ըստ բանի Աւետարանին, կորուսել էր իւր համը և անպիտանացել էր կերակրի համար: Սահմանադրութեան յօրինողքը եթէ փոքր ի շատէ հասկացել էին Եկեղեցւոյ դաւանութեան վսեմութիւնը, պէտք էր յետ կենային այդպիսի օրէնք հրատարակելէն, որովհետև մինչդեռ օրէնքն է արդարութեան վրայ հիմնուում և ոչ արդարութիւնը օրէնքի վրայ, մեզ թուի թէ, երբէք այդպիսի օրէնքի հանդիպած չենք: Սահմանադրութիւնը կամենալով այդ անիրաւ օրէնքը հաստատել, որպէս թէ բանական հիման վրայ՝ անխղճաբար կոչում է այդ, Նախնի կանոնադրութիւնք Հայոց եկեղեցւոյ: Կատարեալ զըրպարտութիւն է այդ ինչպէս պատմութեան նոյնպէս և Եկեղեցւոյ դէմ: Ոչ ինչ կանոնադրութիւնք այդպիսի օրէնքի իրաւունք չեն տալիս Սահմանադրութեան հեղինակներուն: Հայաստանեայց եկեղեցւոյ պատմութեան մէջ միանգամ և եթ յայտնուում է մի անձն, որ հակառակ ազգի կամքին ինքնակամօրէն ձեռն մխեց Եկեղեցւոյ դաւանական փոփոխութեանց և նրա համար Հայոց ազգը իւր ի նշան արհամարհանաց այդպիսի օրինազանցութեան համար Կաթողիկոս Զզրի անուան գլխագիրը մինչև այսօր գլխի վայր է դնում:

Պէտք է միտ բերել, որ Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութիւնը հաստատուած է Նիկիոյ համաշխարհական սուրբ ժողովի մէջ, ուր հաւաքուած էին բոլոր քրիստոնէական եկեղեցիներու սուրբ Հարքը: Այս տեղ Հայք կանգ առին և վերջացուցին բոլոր աստուածաբանական վէճերը և այն օրէն սկսած մինչև այժմ, Աւետարանը ձեռին, կրկնում են այն ժողովքի հանգանակը և այնպէս կամին յայտնի ցոյց տալ թէ իրանց եկեղեցւոյ վարդապետութիւնը նոյնպէս հիմնուած է Աւետարանի վրայ և թէ նրանք միւս քրիստոնեայներու նման երկրպագում են հոգւով եւ ճշմարտութեամբ ճշմարտին Աստուծոյ: Հայոց ազգը ի բնէ անտի օտար է մնում և անպտուղ կրօնական վէճերէն, իր ուղղափառութեան մասին պահպանելով Պօղոս առաքելոյն գեղեցիկ ուսումը. «Այսուհետև, որ միանգամ կատարեալքդ էք զայս խորհեցարուք և թէ այլ ազգ ինչ խորհիցիք. սակայն և զայն Աստուած ձեզ յայտնեսցէ: Բայց յոր ժամանեցաքս զայն խորհել և ըմին կանոնի միաբան լինել: Առ Փիլիպ. Գլ. Գ. 15—16. առ Հռովմ. Գլ. Թ. 5.

Ոչ միայն Կաթողիկոսը կամ Էջմիածնի Սինօդը, այլ և ընդհանուր ազգի ժողովը չկարէ փոխել Եկեղեցւոյ դաւանութիւնը, որ հաստատուած է համաշխարհական ժողովով և կընքուած է անհամար վկաներու արիւնով: Եթէ բռնութիւն կը լինի Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութեանը՝ նոյն ժամանակ նախնական ճշմարիտ եկեղեցին Հայաստանեայց կասէ բռնաւորին, ինչպէս ասաց Ամբրոսիոսը Թէոդոս կայսեր, «Եթէ դու կմտնես աստուածային տաճարը, ես դուրս կգամ նրա մէջէն հանդերձ սրբութեամբ:» Կաթողիկոսի ընտրութեան մասին Սահմանադրութեան 11դ յօդուածը, համաձայն Հայաստանեայց եկեղեցւոյ նախնական կանոնադրութեանց, ընդունում է բոլոր ազգի իրաւունքն ընտրութեան մասին:

« Ծայրագոյն Պատրիարքն Էջմիածնի ընտրեալ լինի ի համօրէն ազգէն Հայոց լուսաւորչական դաւանութեան: Իւրաքանչիւր վիճակ, զօրութեամբ 13դ յօդուածոյն ունի իրաւունս

երկուս քուէից և նշանակէ վասն ընտրութեան Պատրիարքին զերկուս անձնափոխանորդս զմի յեկեղեցականաց և զմիւս ոք յաշխարհականաց: » Բայց 15դ յօդուածով « Հաղորդակից լինին ընտրութեան Պատրիարքին նաև համօրէն անդամք Սինոդոսին Էջմիածնի և եօթանեքին երիցագոյն եպիսկոպոսք գտեալ յայնմ ժամանակի յԷջմիածին: »

Այսպիսի բաժանումն քուէներու Կաթողիկոսի ընտրութեան մասին, ոչ միայն ընդդէմ է նախնի կանոնադրութեանց Հայաստանեայց եկեղեցւոյ և Հայոց ազգի իրաւունքներուն, այլ և յայտնի հակառակութիւն է 11դ յօդուածին, որոյ զօրութեամբ « Մայրագոյն Պատրիարքն Էջմիածնի ընտրեալ լինի ի համօրէն ազգէն Հայոց լուսաւորչական դաւանութեան: »

Այդ ինչ մասնակցութիւն է բոլոր ազգի Կաթողիկոսի ընտրութեան մէջ. Թէ որ վեց վիճակները Ռուսաստանի, որոյ մէջ մինչ 500,000 անձինք կան 13դ յօդուածի զօրութեամբ պիտի ուղարկէ տասներկու պատգամաւոր միայն, և սրանցմէ վեց հոգևոր և վեց աշխարհական. իսկ Սինօդը հանդերձ Էջմիածնի միաբաններով ունի 15 քուէ: Այսպիսի բաժանումն քուէներու, մենք կհամարէինք անմիտ, եթէ չերևէր նրա մէջ մի գաղտնի խորհուրդ, որ է թուլացնել փոքր առ փոքր ազգի մասնակցութիւնը Կաթողիկոսի ընտրութեան մէջ և զօրացնել հոգևորականաց մասնակցութիւնը, որոնց վրայ սահմանադրութեան յօրինողները անտարակոյս կամենային ազդեցութիւն ունենալ ի ձեռն ոսկւոյ կամ պատուանշաններու Հայաստանեայց եկեղեցւոյ անկախութիւնը խանգարելու համար: Ցիրաւի այդ բաժանումն քուէներու, որոյ մէջ հոգևորականաց իրաւունքը հզօրագոյն է քան ազգինը, այն նպատակը միայն ունի, որ ազգի իրաւունքը Կաթողիկոսի ընտրութեան նկատմամբ փոքր առ փոքր ոչնչացնէ և հոգևորականացն հաստատէ, ինչպէս եղաւ այդ Հռովմայ Պապերու ընտրութեան մէջ: Պապերը, ինչպէս և Պատրիարքները, սկզբումը ընտրուում էին ազգէն կամ ժողովրդէն. յետոյ այդ իրաւունքը անցաւ հո-

զեորականաց ձեռին և յետոյ էլ կարդինալներուն . իսկ վերջապէս Պապին սկսաւ ընտրել ոչ ազգը, ոչ ժողովուրդը և ոչ հոգևորականաց դասը , այլ միայն Կոնկլաւը . կարդինալներուն փակուած ժողովը: Իսկ և իսկ կարգադրութիւնն այսպիսի ճանապարհով զուտ է փորում ազգային իրաւանց և Հայաստանեայց եկեղեցւոյ ինքնագոյութեան տակ : Կաթողիկոսի իշխանութիւնը արտաքոյ համազգովին ընտրութեան չունի կենդանական ուժ և զօրութիւն իր հաստատութեան համար : Նա զուրկ է ազգի կարողութենէն, որով պիտի պատերազմի Եկեղեցւոյ անկախութեան և ինքնագոյութեան թշնամիներուն դէմ: « Ո՛վ որ ականջ ունի լսելու, թող լսէ:»

17ª յօդուածի մէջ ասած է . Կաթողիկոսն ընտրւում է քուէի առաւելութեամբ . «Համօրէն ներկայ հանդիսացեալք վերըստին ընտրեն ի չորից անտի զերկուս ոմանս արժանաւորս յԱթոռ ծայրագոյն պատրիարքութեան : »

Հարցնում ենք . ինչու համար են երկու անձինք առաջարկվում բարձրագոյն հաստատութեան. եթէ քուէից առաւելութիւնը ցուցանում է որ մի անձն պիտի լինի Պատրիարք . գուցէ նրա համար դեռ ևս հնար լինի խարդախութեանց, և սրա ազդեցութեամբ հաստատուի նա , որ առաւել ձեռնտու է լինելու տէրութեան հպատակներուն Հայոց եկեղեցւոյ գերութեան նկատմամբ:

« Օգոստափառ կայսրն 19ª յօդուածի զօրութեամբ. բաց որոշեալ զծայրագոյն պատրիարքն Էջմիածնի , զԿաթողիկոսն Հայոց, հրամայէ, զկնի երդմնեցուցանելոյ զնա ի հաւատարմութիւն կայսերական գահին Ռուսաստանի՝ կատարել զձեռնադրութիւն նորին : »

Այդ երդումն աւելորդ է և անօգուտ, որովհետև Կաթողիկոսը իր օծման ժամանակ համբուրելով Խաչն ու Աւետարանը՝ երդնում է հաւատարիմ պաշտպան լինիլ իր Եկեղեցւոյն և նրա վարդապետութեանը: Թէ որ երդումն Թագաւորի հաւատարմութեան պարտաւորում է Կաթողիկոսին կատարել այնպիսի

պահանջմունքներ, որոնք համաձայն են Աւետարանի և Եկեղեցւոյ վարդապետութեանը. ուրեմն այդ երդումն ինքն ինքեան անօգուտ է, որովհետև կաթողիկոսը պարտաւոր է կատարել այդ ամէնը իր օծման մէջ տուած երդման զօրութեամբ. իսկ եթէ կայսերական երդումը պահանջում է կաթողիկոսէն այնպիսի բաներ, որոնք ընդդէմ են նորա Եկեղեցւոյն ուսման և ազգի օգտին, այդ երդումն ապօրինաւոր է և անօգուտ, որովհետև կաթողիկոսը օծուելով երդուած է միշտ հաւատարիմ մնալ իր պարտաւորութեանց, իր եկեղեցւոյն և ազգին համար, որ նորա էական և անհրաժեշտ պարտաւորութիւն է, ըստ որում նա ներկայացնում է իր մէջ հոգևորապէս ազգը, որ նորան ընտրում է և իր եկեղեցւոյ և ազգային օգտի պահպանութիւնը և պաշտպանութիւնը նորան յանձնում է, պատասխանատու կացուցանելով նորան առաջի Աստուծոյ և ընդհանուր ազգիս Հայոց: Կրկնակի երդումը, որ տալիս է կաթողիկոսը մի սխալ վիճակի մէջ է դնում իրան, պատճառ որ կայսրը իբրև մարդ ենթադրուած է կրքերու և մոլորութեանց, օրէնքը որ նորա կամքին նկարագիրն է, կարող է երբեմն նըկարգիր լինել և նորա մոլորութեանց, և այսպէս նա կարող է այնպիսի պահանջողութիւն ունենալ կաթողիկոսէն, որոնք ընդդէմ են նորա խղճին և նորա Եկեղեցւոյն, ուրեմն և նորա երդման:

Ահա մի քանի դիպուածներ, որոց մէջ այդ երկու երդումը միմեանցով են ընկնում:

Ա. 1844 Թուին, այն ինչ Ներսէս կաթողիկոսը պատրաստում էր ճանապարհ ընկնել Պետերբուրգէն դէպ ի Վրաստան, օտար դաւանութեանց Դէպարտամէնտի (տեսչութեան) դիրեկտոր Սկրիպիցինը եկաւ նորա մօտ և յանուն կայսեր առաջարկեց Հայոց եկեղեցւոյ միաւորութիւնը Ռուսաց եկեղեցւոյ հետ: Ո՞վ չգիտէ, որ միահեծան Թագաւորի կամքը հաւասար է նորա պահանջմանը: Ներսէսը և ոչ մի վայրկեան մտածեց իր պատասխանւոյ վրայ. նա զօրեղ խօսքերով մերժեց այն առաջարկութիւնը, որ մի հարուածով կամենում էր

կործանել Հայաստանեայց եկեղեցւոյ ինքնագոյութիւնը. այն որ կառուցուած էր Հայոց ազգի հազարամեայ չարչարանաց հիման վրայ:

Բ. Իշխան Մէնչիկովն 1853 Թուին, երբ Կոստանդնուպօլիս հասաւ, առաջարկեց փոխարքային անյապաղ ուղարկել նոյն մայրաքաղաքը մի եպիսկոպոս, որ ունենար կատարեալ իրաւունք Կաթուղիկոսէն: Վորոնցովն այս մասին խնդրեց Կաթուղիկոսէն, որ այն ժամանակ Տփխիս էր և պատճառ բերեց իբր Թէ այդ եպիսկոպոսն պաշտպանելու էր այնտեղ Էջմիածնի աԹոռի, չգիտենք ինչ օգուտը: Սրանից յետոյ երկու անգամ նոյն փոխարքայն ուղարկեց Ներսէսի մօտ իր (տիպլօմատիկական քանցէլէրիայի) տիրէկտօր տէրուԹեան արտաքին գործոց դիւանապետ Լէյլին, որստիպում էր շուտով կատարել եպիսկոպոսի ուղարկումը: Ներսէս ԿաԹուղիկոսը հասկանալով Նիկողայոս Թագաւորին Թագուն խորհրդները կրկին և կրկին դարձնում էր այդ Թախանձական պահանջումն, պատճառելով, Թէ չունէր մի յաջողակ եպիսկոպոս յիշեալ յանձնարարուԹեան համար: ԿաԹուղիկոսի այդպիսի ընԹացքը դաւաճանուԹիւն համարեց տէրուԹիւնը, բայց պատմուԹեան դատաստանը անշուշտ իրաւացի կհամարէ այս ընԹացքը յանուն Եկեղեցւոյ, որ, չէ կարող և պէտք չէ հաղորդ լինել բռնաւորի աշխարհակալուԹեան նպատակներին՝ յանուն մարդկուԹեան՝ որոյ օգուտը օտար էր Նիկողայոսի բռնաւորական խորհուրդներէն. յանուն Հայոց ազգին՝ որոյ արիւնը հեղեղի պէս պէտք էր Թափուէր, Թէ որ ԿաԹողիկոսը մասնակից լինէր Ռուսաց կայսեր դեսպանին դաւաճանուԹեանց, որովհետև այդ մասնակցուԹիւնը անպատճառ հետևանք էր ունենալու՝ մի ուրիշ մասնակցուԹիւն պատերազմի մէջ. որ պատրաստում էր Ռուսաց, Օսմանցւոց և Եւրոպիոյ հետ և կորստաբեր էր լինելու երեք միլիոն Հայոց Օսմանեան տէրուԹեան:

Գ. 1857 Թուին յունվարի 2 ին, փոխարքայ Բարիատինս-

կին հրաւիրեց Ներսէս կաթողիկոսին իր մօտ և մինչ սա յայտնուեցաւ՝, յանուն կայսեր առաջարկեց նրան ի ներկայութեան Սարգիս եպիսկոպոսի Ջալալեանց սրբոյն Անդրէասի պատուանշանը և վեց հազար ռուբլի տարեկան թոշակ, այն պայմանով, որ կաթողիկոսը կամաւորուի Հայաստանեայց եկեղեցին միաւորել Ռուսացը հետ. Ներսէս Կաթողիկոսը, որ յառաջագոյն, այսինքն դեռ ևս օգոստոսի ամսումը ազդարարեան թուղթ էր ստացել Վորոնցովէն. « Թէ Բարիատինսկին մի բարձր յանձնարարութիւն ունի նրան անելու կայսեր կողմէն, և որ ի հարկէ Կաթողիկոսն ընդունելու է. » անփոյթ եղաւ այս դիպուածի մէջ այն երդումէն՝ որնոր տուել էր Ռուսաց տէրութեան հաւատարմութեան մասին և պատասխանեց Պօղոս առաքելոյ խօսքերով « Ձեզ լսել առաւել քան Աստուծոյ ընտրեցէք.» Գործ. Առաք. Գլ. Դ. 19. « Հնազանդիլ պարտ է Աստուծոյ քան մարդկան. » Նոյն Գլ. Ե. 29.

Ցիրաւի հնազանդիլ պէտք է Աստուծոյ և իր խղճի մտաց, աւելացնում ենք և մենք, առաւել քան մարդկան: Այսպէս էին Հայոց ազգի պատասխանները մինչ Ցազկերտները կամենում էին կործանել նրանց եկեղեցին: Այսպէս էր իւրաքանչիւր Հայու խորհրդական դրօշմը կամ սկզբունքը (դըվիզը) Կաթողիկոսէն սկսած մինչև մատաղահաս սերունդը, որոց Վարդաններն իրանց արեան հետ յանձնել են իբրև սրբութիւն՝ խղճմտանաց և եկեղեցւոյ ազատութիւնը: Բռնաւորը միշտ կլսէ ամեն մէկէն պարտականութիւնը և խղճմտանաց ձայնը, այսինքն « Հնազանդիլ պարտ է Աստուծոյ և իր խղճի մտաց, առաւել քան մարդկան:

Սահմանադրութիւնը Սինօդ հաստատելուց յետոյ՝ անցնում է վիճակաւոր առաջնորդներուն: Այն տեղ բռնաւորութիւնը արդէն ազատօրէն է իւրացուցանում այն իրաւունքը, որ պատկանում է Հայոց ազգի Կաթողիկոսին ինչպէս և նրա պատասխանատուութեանը առաջի Աստուծոյ և ազգի: « 57ᵍ յօդուածի զօրութեամբ՝ Թէմական առաջնորդք եկեղեցւոյ Լուսաւորչական

Հայոց ի Ռուսաստան՝ կարգին յօգոստափառ կայսերէ յեկեղեցական ատենանաւորաց այնր դաւանութեան, որք հաստատին և արձակին բարձրագոյն հրովարտակօք:»

Իսկ 58դ յօդուածի մէջ ասած է. «Արքեպիսկոպոսք Լուսաւորչական Հայոց ի Ռուսաստան լիակատար հոգևոր առաջնորդք այսր դաւանութեան ի Թէմսն յանձն արարեալս նոցա բարձրագոյն հրամանաւ, և զկառավարութենէ իւրեանց տան պատասխանի ի բարձրագոյն կառավարութեան:»

Հարցնում ենք, միթէ օրէնք է այս, կանոն է, ոչ, այլ կոպիտ նիւթական ոյժ, միթէ այսպիսի դէպ ի ներս յարձակումը կայսերական իշխանութեան Հայոց եկեղեցւոյ վարչութեան մէջ՝ Սահմանադրութեան յօրինողները գտել էին նախնի աւանդութեանց և օրէնսդրութեանց մէջ;

45դ յօդուածի զօրութեամբ. «ի Սիւնհոդոսի Լուսաւորչական Հայոց Էջմիածնի կարգեալ լինի առանձին հոգատար (պրօկուրօր) հաստատեալ ի կառավարիչ ի Սենաթէն,» և որ 46դ յօդուածի զօրութեամբ «վարի ի գործս իւր ընդհանուր կարգադրութեամբք, որք սահմանեալ կան յաղագս հոգատարական պաշտամանց: Նա պարտի ունել զմիօրինակ հսկողութիւն թէ՛ զդատողական, թէ զբարեկարգական գործոց, որք մտանեն ի քննութիւն Սիւնհոդոսի:»

Սրամէն հետևում է, որ Սինօդը կազմուած է Կաթողիկոսի իշխանութիւնը նուաղեցնելու համար: Իսկ պրօկուրօրը երկուսի գործողութիւնքն էլ դիտելու համար: Սա է նմանապէս, որ պարտաւոր է ամսէնը մի անգամ կուսակալի միջնորդութեամբ տեղեկութիւն տալ ներքին գործոց պաշտօնէին, բոլոր այն բաներու մասին, որոնք խօսւում են, գրւում են և գործւում Էջմիածնի վանքի մէջ:

Այսպէս ահա Սահմանադրութիւնը Սինօդը կազմելով Եկեղեցւոյ էական յատկութեան գրկանք հասուցանելով և Կաթողիկոսի հոգևոր իշխանութեան միութիւնը խափանելով կործանեց և նրանց նիւթական կարողութիւնը: Միայնակեաց հոգևորա-

կանք հնուց հետէ այնպիսի անձինք էին, որոնք ըստ աւետարանական ձայնին թողած՝ իրանց ծնողքը, եղբարքը և ընտանիքը նուիրում էին իրանց Աստուծոյ սիրոյն: Այդպիսի սկըզբունքը աշխարհի ու աշխարհային բաներու ուրացութեան այն հետեւանքն ունէին, որ ուրիշ իրաւանց հետ միասին ոչնչացնում էին և ժառանգութեան իրաւունքը: Ժողովուրդը միայնակեաց հոգևորականներու ինչքն ու ստացուածքը համարելով սեփհականութիւն էջմիածնի կաթողիկոսական աթոռոյն միշտ առատութեամբ էր բաշխում նրանց իր տուրքը: Այսպիսի տուրքերը միւս ընծայաբերութեանց հետ միասին բաղկացնում էին էջմիածնական աթոռոյ նիւթական ոյժը՝ որ գործ էր ածում Կաթողիկոսը եկեղեցւոյ և ազգի կարօտութիւնքը և հարկաւորութիւնքը լցուցանելու համար: Սահմանադրութիւնն ընդունելով ժառանգներու իրաւունքը միայնակեաց հոգևորականներու ստացուածքին վրայ՝ զրկում է կաթողիկոսական Աթոռը այն մեծամեծ գումարներէն որ կարող էր նա ունենալ:

Սահմանադրութեան 71դ յօդուածին մէջ ասած է; « Ի մեռանել թէմակալ առաջնորդին եկեղեցւոյ Լուսաւորչական Հայոց՝ եթէ առանց կտակի մեռանիցի և ոչ ունիցի զօրինաւոր ժառանգս՝ սեփհական ստացուածք նորին՝ դառնան յօգուտ եկեղեցւոյ Լուսաւորչական Հայոց այնր թէմի: »

Իսկ 91դ յօդուածի մէջ այդ իրաւունքը ժառանգութեան տարածում է միայնակեաց հոգևորականներու բոլոր կարգի վրայ և նոյն ինքն Կաթողիկոսը չի բաց առնուում այդ օրէնքէն:

« Համայն շարժական ստացուածք մնացեալք զկնի մահուան կրօնաւորի սեփհականին վանուց նորին, եթէ ոչ թողուցու զկըտակ ինչ կամ չունիցի զօրինաւոր ժառանգս: »

Սահմանադրութիւնը վերոյիշեալ 71դ և 91դ յօդուածներով միայնակեաց հոգևորականներու մէջ գրգռում է զանազան ինքնասիրական կրքեր և ախտեր. մինչ նրանք աշխարհս ուրացել էին նրա համար, որ յաւիտեան խլեն իրանց մէջէն այդպիսի ախտերը, ընդունել ժառանգներու իրաւունքը, միայ-

նակեաց հոգևորականներու կայքին վրայ՝ նշանակում է Հայոց եկեղեցւոյ ստացուածքը յափշտակութեան ենթարկել։ Յիշեալ յօդուածներն ոչ միայն ներկայումս են զրկում եկեղեցին նրա նիւթական կարողութենէն, այլ և ապագայումն էլ բոլորովին ոչնչացնում են, որովհետև ժողովուրդը, տեսնելով որ իր տուրքը միայնակեաց հոգևորականներուն պիտի հասնի, ոչ թէ էջմիածնի կաթողիկոսական աթոռոյն, համաձայն նախնի աւանդութեանց և օրէնսդրութեանց, այլ վանսկանաց ժառանգներուն, կասեցնում է իր ընծայաբերութեանց առատութիւնը, որով ցամաքում է նիւթական կարողութեան աղբիւրը. այս ինքն ժողովրդեան եռանդը Եկեղեցւոյ նիւթական օգտի մասին։ Սահմանադրութիւնը նոյն յօդուածներում, Հայաստանեայց Եկեղեցւոյ ստացուածքի մեծ մասը միայնկեացներու այսինքն վարդապետներու և եպիսկոպոսներու ինքնասիրական կիրքերուն թոյլ տալուց յետոյ՝ մնացած կալուածքը և դրամական գումարները տալիս է տէրութեան ձեռքը: 15ᵍ բաժանումը 35ᵍ յօդուածի պարտաւորութիւն է համարում Սինօդին:

« Սահմանել զհարկաւոր մատեանս զհամօրէն ընչից վանօրէից և եկեղեցեաց Հայոց ի սահմանս Ռուսաստանի եղելոց: »

Իսկ 16ᵍ բաժանումը նոյն յօդուածի պարտաւորեցնում է Սինօդին ամեն տարի տեղեկութիւն հասուցանել ներքին գործոց պաշտօնէին յիշեալ ստացուածքի համար:

9ᵍ յօդուածի զօրութեամբ Հայաստանեայց եկեղեցին չէ կարող իրաւունք ստանալ անշարժ կայքի սեփհականութեան վրայ առանց հրաման ունենալու տէրութենէն: Յիշեալ յօդուածի մէջ ասած է: « Եկեղեցիք Լուսաւորչական Հայոց ի Ռուսաստան ունին իրաւունս ստանալոյ զանշարժ կալուածս, բայց ոչ այլ ազգ կարեն ստանալ և օտարացուցանել զայնս եթէ ոչ բարձրագոյն բարեհաճութեամբ աղերսամատոյց լինելով զայսմանէ ի ձեռն նախարարին ներքին գործոց սահմանադրեալ եղանակաւ: »

Հարցնում ենք, այդ ինչ իրաւունք է սեփհականութեան,

որով չէ կարելի ոչ գնել և ոչ վաճառել. յիրաւի այդ մի անլուծանելի անհեթեթութիւն է: Կաթողիկոսի ձեռին ոչ մի դրամական գումար չթողնելու համար, որ գուցէ հարկաւոր դիպուածներում գործածէ նա յօգուտ եկեղեցւոյ և ազգի: Սահմանադրութիւնը մի հաճոյանման պատճառով պահանջում է Սինօդէն բոլոր դրամագլուխները, որոնք կարող էին ժողովել Էջմիածնի աթոռումը, տէրութեան յանձնել: Այս մասին 51դ յօդուածի մէջ ասած է: « Գանձապետին է գործ զգուշանալ, զի մի յարկղ Սինոդոսի մնասցին առանց ինչ հարկաւորութեան առաւելագոյն գումարք դրամոց, և առաջարկել Սինոդոսին Լուսաւորչական Հայոց առ ի տնօրինել. զի գլուխք դրամոց առաւելցին տոկոսեօք ըստ սահմանադրութեան օրինաց: Յանձնել մասնաւոր անձանց զգլուխս դրամոց՝ յայնժամ միայն թոյլ տուեալ լինի, երբ Սինոդոսն օգտակար համարեսցի զայն, և յանձն արարեալ նովին եղանակաւ մասնաւոր ան-ձին ումէք գումար դրամոց մնայցէ յապահովի հաւաստի գրաւականօք: »

Գումարների յանձնարարութիւնը մասնաւոր անձանց, որ կարգադրութիւնը թոյլ է տալիս « Սինոդոսի հաւանութեամբ և օրինաւոր գրաւով, » ամենևին անկարելի է և անգործադրելի, պատճառ, որ Սինօդը և պրօկուրօրը, որոնք տէրութեան ստեղծուածք են. միշտ գործելու են համաձայն տէրութեան հաճոյից և ինչպիսի և լինէին մասնաւոր անձանց գրաւները, սրանք միշտ կլինին անբաւական և գումարներու յանձնարարութիւնը անօգտաւէտ է. ուստի և հետևաբար այդ գումարները օրինաւոր կերպով շահեցնելու համար պիտի ուղարկուին տէրութեան բանկը, ուր 119դ յօդուածի զօրութեամբ ուղարկուելու են բոլոր վիճակաց գումարները, նոյն կերպով շահեցնելու համար: 119դ յօդուածումն ասում է: Գլուխք դրամոց եկեղեցեաց՝ առ ի շահել զտոկոսիս տուեալ լինին ի կայսերական կամ ի ժողովրդական գանձարանս:

Բայց կարելի է արդեօք այդ գումարները կրկին դուրս բերել բանկից. Սահմանադրութիւնն այս մասին լռում է. հաւանական

է որ յիշեալ գումարները միեան տէրութեան ձեռքումը մինչ ի յաւիտեան, ինչպէս և նրանց թուագիրը Կաթողիկոսի ձեռքումը, նմանապէս մինչ ի յաւիտեան:

Այժմ պիտի հարցնենք, միթէ այդ սահմանադրութեամբ, որոյ միջոցով այսքան ընդդիմադրութիւնք կան նախնի օրէնսդրութեանց և ազգային իրաւանց 1836 թուէն մինչև այսօր վարում է Հայաստանեայց Եկեղեցին: Մենք կպատասխանենք՝ այո, վարում է, բայց թէ ինչպէս յետագայ պարագայքը ցոյց կտան:

Փառք Յովհաննէս կաթուղիկոսին (Կարբեցի) որ երբ յիշեալ սահմանադրութիւնը ստացաւ Երևանու նահանգական կառավարիչ իշխան Բէհբութեանցէն և ընթերցաւ ծայրէ ի ծայր, վեր կացաւ իր տեղէն, առաւ վեղարը գլխէն և գետին զարկաւ, ասելով «Եթէ իմացած լինէի այդպիսի կարգադրութիւն լինելը մինչև իմ օծումը, անշուշտ յանձնառու չէի լինել ամենայն Հայոց ազգի Կաթողիկոսութիւնը»: Բէհբութեանցը շփոթուած Կաթողիկոսի սրտմտութենէն՝ սկսաւ խաղաղացնել նրան հաւատացնելով թէ նա կարող է վարել Հայոց Եկեղեցին համաձայն նախնի օրէնսդրութեանց, միայն թէ թողնէ Սահմանադրութիւնը մնալ ինչպէս որ է: Հազիւ հազ այս խօսքերէն հանգստացաւ փոքր ինչ բարկացած Կաթողիկոսը, բայց աւաղ այն խօսքերու մէջ չկար ճշմարտութիւն: Այս տեղեկութիւնքը մենք ստացել ենք Դաւիթ Սուրէնեանցնէն, որ ականատես է եղել յիշեալ անցքին:

Ներսէս կաթողիկոսի պատրիարքական գահը բազմելէն յետոյ՝ ներքին գործոց պաշտօնեայ Գրաֆ Պէրովսկին թղթակցութեամբ յայտնեց նրան՝ թէ Վեհափառ կայսրը ցանկանում է Սահմանադրութիւնը նորոգել համաձայն նախնի օրէնսդրութեանց Հայաստանեայց եկեղեցւոյն. Ներսէսը մասնաւոր ժողով նշանակեց Տփխիսում և նրան յանձնեց սահմանադրութեան փոփոխութիւնը, ժողովը բաղկանում էր ինն կամ տասի չափ երկչոտ կամ կարճատես ատրճանաւորներէ, որոնք

կամ բուական համարձակութիւն չունենալով և կամ չհասկանալով հին Սահմանադրութեան Թշնամական հոգին և ուղղութիւնը Հայաստանեայց եկեղեցւոյ դէմ. յօրինեցին մի նոր Սահմանադրութիւն, որոյ բովանդակութիւնը հազիւ էր զանազանւում հինէն: Կաթողիկոսը ստացաւ յանձնաժողովէն այդ Սահմանադրութիւնը և խոստացաւ քննել և ուղղել, բայց թողեց առանց ուշադրութեան, որովհետև ամենևին անբաւական էր նրանով:

Հայաստանեայց եկեղեցւոյ վարչութեան Սահմանադրութիւնը մասնաւոր անձանց գործ չէ, այլ բոլոր Հայոց ազգի գործն է, նրան յօրինողը պէտք է լինի ազգը իր երեսփոխաններու ձեռքով, նրա բովանդակութիւնը և նրա նպատակը, մեր կարծիքով. գլխաւորապէս պիտի լինին յետագայ նիւթերը:

Ա. Հայոց ազգի իրաւանց ճիշտ և միակ պահպանութիւնը Կաթողիկոսի ընտրութեան մէջ:

Բ. Կաթողիկոսական իշխանութեան միութիւնը եկեղեցւոյ վարչութեան մէջ իբրև էական տարր այդ իշխանութեան:

Գ. Կաթողիկոսի պատասխանատուութիւնը ազգի առջև, որոյ ներկայացնողն է նա:

Դ. Հայաստանեայց եկեղեցւոյ ինքնագոյութիւնը և անկախութիւնը իբրև պայման Sin quoi non առանց որոյ չիք:

Արդարութիւնը, նոյն իսկ և Ռուսաց տէրութեան օգուտը պահանջում են, որ յիշեալ Սահմանադրութիւնը բոլորովին ջնջուի, որովհետև իր յայտնութեան օրէն սաստիկ տրտունջ բարձրացուց, ինչպէս Հնդկաստանու հայոց կողմէն, որոնք իրանց անբաւականութիւնը նոյն ժամանակ յայտնեցին գրով Ռուսաց դեսպանին Լօնդօնումը: Նոյնպէս Օսմանեան տէրութեան և Ռուսաց տէրութեան տակն եղող Հայոց կողմէն, որք այդ սահմանադրութեանը նայում են իբրև մի Թշնամական բանի Հայաստանեայց եկեղեցւոյ անկախութեան և իրանց ազգայնութեան դէմ: Ժամ է արդէն ի բաց Թողնել այդ կոբրստաբեր ձգտումը դէպի կրօնական միակերպութիւնը, որ

այնքան մնաս հասուց քրիստոնէութեանն ու մարդկութեանը։ Ժամ է արդէն Ռուսիոյ տէրութեան հասկանալ թէ առանց խղճի և կրօնի ազատութեան չկայ ոչ ուղիղ կրօն և ոչ քրիստոսաքարոզ եկեղեցի, և թէ այն՝ որ կոչում են ուղղափառութիւն՝ միութիւն չէ, այլ միակերպութիւն, որ ճնշում է խղճի ազատութիւնը, միայն այն պատճառով՝ որ բոլոր լեզուներէն և Աստուծոյ երկրպագուներէն կազմէ մի լեզու և մի եկեղեցի։ Ահաւասիկ տասնուհինգ դար է արդէն, որ ամենահզօր և շատ հնարագէտ գործակալներ խորտակում են միակերպութեան կորստաբեր սիստեմայն։ Իսկ Ռուսաց տէրութիւնը դեռ ևս անմտութեամբ հետևում է այդ մահառիթ սկզբունքին։ Ժամ է արդէն թոյլ տալ Աստուծոյն Աստուծոյ, թոյլ տալ Հայոց՝ ազատութիւն խղճի և կրօնի։ — Ազատութիւն երկրպագել Աստուծոյ ըստ գեղեցիկ բանի առաքելոյն Պօղոսի։ «Իւրաքանչիւր ոք զիւր միտս հաճեսցէ։» Այդ ազատութիւնը խնդրում ենք մենք և մեր քրիստոնեայ եղբարց Վրացւոց համար էլ, որոց տարի է ի վեր, արգիլուած է իրանց լեզուով աղօթել եկեղեցիների մէջ։ Այդ ազատութիւնը խնդրում ենք մենք և մեր ըստ մարդկութեան եղբարց մահմետականաց համար, որոնք այլև այլ պատճառներով հալածուում են իբրև անհաւատ։ Ժամ է թոյլ տալ Աստուծոյն Աստուծոյ, քակել ուղղափառական նորոգութեան ընկերութիւնը Կովկասումը, որոյ գաղտնի նպատակը ոչ ոքի համար արդէն գաղտնի չէ, ոչ յայսկոյս և ոչ յայնկոյս Կովկասու։ Այն միտքը՝ թէ կարելի է ամարդի ուժով հաստատել կրօնական միութիւն՝ անխոհեմ և անհեթեթ է։ Բռնութեամբ առնել այն որ Աստուած յատկացրել է միայն ազատ համոզմանց՝ նշանակում է գերադասել արտաքին միութիւնը ներքնոյն, որ միայն հաճելի է Աստուծոյն. այդ նշանակում է խնդրել ուղղափառ եկեղեցի, այլ ոչ Քրիստոսի կրօնը։ Ստրկացունել խիղճը ահով, յափշտակել նրան պատիր յոյսերով ու խաբեբայութեամբ՝ նշանակում է ուղղակի թշնամանել Աս-

տուծոյն, որ այդ խիղճը տնկել է մեր սրտումը և որուն պատկանում է իշխանութիւն այդ խղճի վրայ: Մի մարդու կամ մի ժողովրդեան այնպիսի դրութեան հասուցանել, որ նա պարտաւորուած լինի կամ իր նիւթական օգուտէն հրաժարուիլ և կամ իր հաւատը, խղճի ազատութիւնը, ուրանալ՝ սրբապղծական ձեռնարկութիւն է: Ցիշեալ ընկերութիւնը ուղղափառական նորոգութեան՝ Կովկասու մեջ արդէն սկսել է ցոյց տալ իր կորստաբեր հետևանքը ինչպէս ժողովրդեան վրայ այնպէս էլ տէրութեան վրայ:

Արևելեան և արևմտեան Տաղիստանի մահմէտական բնակիչները նոյնպէս և Նուխուայ, Բորչալուի և այլ տեղերի մահմէտականք սկսան գունդ գունդ Ռուսաց սահմանէն դուրս ելանել դէպի Օսմանեան կամ Պարսից տէրութիւն: Կովկասու ամայութիւնը դրան է հասած, եթէ այդ ընկերութիւնը կշարունակէ իր կրօնական հալածանքը և կըքշէ ժողովրդեան իրանց երկրէն յանուն Աստուծոյ, որ ինչպէս մեր Փրկիչը ասել է «Ոչ թէ զոհ է խնդրում, այլ ողորմութիւն:»



ԿԱՐԳ ԵՒ ԿԱՆՈՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

*Որենք առաջարկուած է Մատթէոս Կաթողիկոսին 1863 թուին Ռուսիոյ տէրութեանը.*

ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԴԻՒԱՆԷՆ ՀԱՆԱԾ

---

## ԳԼՈՒԽ Ա.

## ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՀԱՄԱՐ

### ՅՕԴՈՒԱԾ Ա.

*Հայաստանեայց Սուրբ և Առաքելական Եկեղեցին ընդունելով Աւետարանի լոյսը սուրբ Թադէոս և սուրբ Բարդուղիմէոս առաքեալներէն և առաքելահաւասար սուրբ Գրիգոր Լուսաւորչէն, խոստովանում է Տէր Յիսուս Քրիստոսին իրան գլուխ։*

*Նա հիմնած է սուրբ Մարգարէներուն և Առաքեալներուն գրուածքներու վրայ, դաւանում է Նիկիոյ Ժողովոյն հաւատոյ հանգանակը և ընդունում է միայն երեք առաջին Ընդհանրական սուրբ Ժողովները։*

### Բ.

*Մայրագոյն հոգևոր Տէրն ու Հովիւը Հայաստանեայց Եկեղեցւոյ է Կաթողիկոսն ամենայն Հայոց։*

### Գ.

*Կաթողիկոսը՝ ինչպէս բոլոր Հայոց ազգէն ընտրուած անձն՝ ունի լիակատար իշխանութիւն Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ վարչութեան վրայ։*

Դ.

Կաթողիկոսն Հայաստանեայց Եկեղեցւոյ նախնի կարգերուն ու կանոններուն համաձայն ընտրւում է ամենայն երկրում գտնուող Հայոց ազգէն։

Այս ընտրութիւնը լինում է յետագայ կերպով

Ե.

Հայաստանեայց Եկեղեցւոյ Կաթողիկոսի մահուանէ յետոյ՝ Կաթողիկոսի Տեղապահը Կաթողիկոսական խորհրդին հետ խորհուրդ անելէն յետոյ՝ ուղարկում է վիճակային վարչութեանց ձեռքով ազդարարական թուղթ ամեն երկիրներ, ուրտեղ գըտնուում են Հայք և նշանակում է մի տարի ժամանակ նոր Կաթողիկոսի ընտրութեան համար։

Զ.

Կաթողիկոսի մահուան լուրը տարածուելէն յետոյ՝ Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ ժողովուրդն իրաւունք ունի քաղաքներումն ու գիւղերումն ընտրել պատգամաւորներ, առանց զանազանելու նրանց ծնունդը, վիճակը և կոչումը, որոնք կարող են լինել, ինչպէս աշխարհական, նոյնպէս և հոգևորական։

Է.

Գիւղերու կամ գիւղաքաղաքներու պատգամաւորները պէտք է ժողովուին իրանց գործակալներու բնակած քաղաքը, ամեն գործակալի վիճակէն երկու պատգամաւոր ընտրելու համար, առանց զանազանելու նրանց ծնունդը, վիճակն ու կոչումը, որոնք պէտք է գնան իրանց վիճակաւոր առաջնորդի նստած տեղը, ուրտեղ պէտք է լինի վիճակաւոր պատգամաւորներու ընտրութիւնը։

Ը.

Հայոց ամեն վիճակաւոր առաջնորդի բնակած տեղի եկեղեցիներն իրաւունք ունին առանց զանազանելու ծնունդը, վիճակըն ու կոչումը, ամեն եկեղեցի առանձին՝ ընտրել երեք պատգամաւորներ, որոնք գործակալական թեմէն ընտրուած պատ-

գամաւորներու հետ՝ ընտրում են մի պատգամաւոր առաջնորդական վիճակէն. Նա կարող է լինի, ինչպէս աշխարհական՝ նոյնպէս և եկեղեցական կոչումէ։ Էջմիածնի միաբանութիւնն էլ իրաւունք ունի ընտրել իր մէջէն եօթը պատգամաւոր Կաթողիկոս ընտրելու համար։

Թ.

Առաջնորդական վիճակէն պատգամաւորներ ընտրելու հետ էլ մի և նոյն ժամանակ ընտրում են նրանց փոխանորդներ հարկաւոր եղած ժամանակ նրանց տեղը բռնելու համար։

Ժ.

Եթէ գիւղական պատգամաւորները նշանակուած ժամանակին բոլորը չգան իրանց գործակալի բնակութեան տեղը, գործակալական պատգամաւորներու ընտրութիւնը կկատարուի ներկայ գտնուող պատգամաւորներով։ Այս մի և նոյն կարգն էլ կըպահպանուի եթէ գործակալական պատգամաւորները լիովին ժողովուած չլինին վիճակաւոր առաջնորդներու բնակութեան տեղը։

ԺԱ.

Եթէ առաջնորդական վիճակէն ընտրուած պատգամաւորները չգան նշանակուած ժամանակին Էջմիածին, այն ժամանակ Կաթողիկոսի ընտրութիւնը կատարուում է ներկայ գտնուած առաջնորդական վիճակներէն եկած պատգամաւորներով. եթէ ներկայ գտնուող պատգամաւորները միաձայն հաճութեամբ կամենան սպասել պատգամաւորներու լիակատար ժողովքին՝ նրանք իրաւունք ունին ժամանակն երկարացնել, ինչպէս որ իրանք կըկամենան, Կաթողիկոսի ընտրութեան համար։

ԺԲ.

Ընտրութիւնը լինում է Էջմիածնի վանքումը պահպանելով խստութեամբ Հայաստանեայց Եկեղեցւոյ կարգն ու կանոնը, ծէսն ու արարողութիւնը։

ԺԳ.

Իւրաքանչիւր առաջնորդական վիճակի պատգամաւոր ընտ-

րութեան սկզբումը առաջարկում է իր (կանդիդատին) ընտրելոյն բոլոր պատգամաւորներու ներկայութեանը՝ հետագայ կերպով։ Նա փակած արկեղ (քուէտուփ) մէջն է ձգում իր ոլորած տոմսակը, որոյ վրայ գրուած է լինում այն ընտրելոյն անունը, ազգը, կոչումը և բնակութեան տեղը, որուն նա արժանաւոր է կարծում Կաթողիկոսութեան։

ԺԴ.

Տեղապահը, ինչպէս Նախագահ պատգամաւորներու ժողովոյն, բաց է անում արկղը, որու մէջն են պատգամաւորներու տոմսակները և դուրս հանած տոմսակները բարձր ձայնով կարդում է. յետոյ ընտրելի անունները գրում են մի բարձր տեղ, որ ամէն պատգամաւոր կարող լինի կարդալ. իսկ բաց արած տոմսակները դնում են սեղանի վրայ պատգամաւորներու առջև։

ԺԵ.

Իւրաքանչիւր պատգամաւոր գրում է նշանակուած ընտրելիներու թուէն չորս ընտրելոյ անուն ուրիշ տոմսակի վրայ և ոլորելով ձգում է արկղի մէջ։ Ամէն տոմսակ կարդալիս տեղապահը գրում է ընտրուած ընտրելիներուն անունները. հաշւում է նրանց ստացած ձայներու որքանութիւնը և ամենուն՝ անունը, նոյնպէս ըստ բազմութեան ձայնի այն չորս ընտրելիներուն անունները գրում են բարձր տեղ, ով որ շատ ձայն է ստանում, ընտրւում է Կաթողիկոս Ամենայն Հայոց, իսկ եթէ ձայները հաւասար են դուրս գալի, Կաթողիկոսի ընտրութիւնը վրճռւում է վիճակ ձգելով։

ԺԶ.

Այս ընտրութիւնը վերջանալուց յետոյ ամէն երկրի պատգամաւոր յայտնում է իր վիճակաւոր առաջնորդին և իրան տէրութեանը՝ թէ ով արժանացաւ ամենայն Հայոց Կաթողիկոսական Գահին։

ԺԷ.

Ընտրուած անձը, իր Եկեղեցւոյ կարգերուն ու կանոններուն համաձայն երդուելէն յետոյ, որ Աւետարանական ուսմանը և

Հայաստանեայց Եկեղեցւոյն հաւատարիմ լինի, օծւում է Կաթողիկոս Ամենայն Հայոց, ըստ նախնի կարգաց և կանոնաց Հայաստանեայց Եկեղեցւոյ։

## ԳԼՈՒԽ Բ.

### Ամենայն Հայոց Կաթողիկոսի իրաւունքն ու պարտքը.

Ա.

Կաթողիկոսն է յաջորդ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի Էջմիածնի Կաթողիկոսական Գահի վրայ։

Բ.

Կաթողիկոսի մշտական բնակութեան տեղն է ըստ սովորութեան Հայոց՝ Էջմիածնի վանքը։

Գ.

Կաթողիկոսի Տիտղոսն է ի հնուց գործածուած Կաթողիկոս Ամենայն Հայոց։

Դ.

Համաձայն նախնի սովորութեանց՝ Կաթողիկոսը քաղաքներէն, իր Կաթողիկոսարանէն, Էջմիածնի վանքէն ելանելու և մտանելու ժամանակ իրաւունք ունի ուղեւորել ամենայն փառքով և պատուով իր ազգի կողմէն։

Ե.

Հայաստանեայց Եկեղեցւոյ պաշտամանց մէջ Կաթողիկոսի անունը յիշատակւում է ըստ կանոնաց Եկեղեցւոյ։

Զ.

Համաձայն նախնական օրինաց Հայաստանեայց Եկեղեցւոյ միմիայն Կաթողիկոսն ունի իրաւունք միւռոն օրհնել բոլոր Հայոց Եկեղեցեաց համար։

Է.

Կաթողիկոսն՝ ինչպէս գլխաւոր Տէր և Հովիւ Հայաստանեայց Եկեղեցւոյ, միմիայն ինքն ունի իրաւունք օծել առաքինի և օգտակար հոգևորականներէն Եպիսկոպոս ։

Ը.

Կաթողիկոսը միմիայն ունի իրաւունք վարձատրել արժանաւոր հոգևորականներուն ըստ նախնի սովորութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ։

Թ.

Կաթողիկոսն իր հոգևորականներուն ուրիշ աշխարհքներ ուղարկելու ժամանակ, որ տեղ Հայոց ազգ կայ բնակուած, պէտք է վարուի համաձայն այն աշխարհներու օրէնքներուն ։

Ժ.

Կաթողիկոսն՝ ինչպէս ընդհանուր Հովիւ Հայոց ազգին, իրաւունք ունի ՚ի ձեռն ազգային հոգևոր ուսումնարանաց տարածել գիտութեան լոյսն իր ազգայնոց մէջ ։

ԺԱ.

Կաթողիկոսը, իբրև ընդհանուր Հովիւ Հայոց ազգի, Ներսէս Շնորհալւոյ նման ուղարկում է ժամանակ առ ժամանակ Ընդհանրական Թղթեր հանդերձ օրհնութեամբ ամենայն աշխարհներումը գտնուող Հայոց ազգին, յորդորելով նրանց միայն խաղաղ և առաքինի վարքով և հնազանդ օրինաւոր իշխանութեանց՝ համաձայն բանին սրբոյ Աւետարանի ։

ԺԲ.

Որ Թագաւորի իշխանութեան տակ, որ գտնւում է Հայոց ազգը՝ նոյն Թագաւորի Գահակալութեան ժամանակ Կաթողիկոսն ուղարկում է նրան շնորհաւորութեան կոնդակ ։

ԺԳ.

Ինչ գործի և դիպուածի մէջ, որ պահանջում է այն Տէրութեան հրամանը, ուրտեղ բնակւում են Հայք, Կաթողիկոսը պէտք է վարուի այն Տէրութեան օրէնքներուն համաձայն ։

ԺԴ.

Կաթողիկոսը նշանակում է Կաթողիկոսական խորհրդին ծառայողներ, որքան որ հարկաւոր է, այն Հայոցմէ որոնք իմանում են այն Տէրութեանց օրէնքն ու լեզուն, որոնց սահմանումը գտնւում է Հայոց ազգն, որպէս զի Կաթողիկոսական խորհուրդը կարող լինի համաձայնել իր գործողութիւնքը նոյն Տէրութեանց օրէնքի հետ:

ԺԵ.

Կաթողիկոսին, ինչպէս իր ընտրելոյն, յանձնում է Հայոց ազգը պաշտպանել անմատչելի իր Եկեկեղեցւոյ Վարդապետութիւնը և իր Հաւատոյ Գլխաւոր մասերու պաշտամունքը։

ԺԶ.

Հաւատոյ Գլխաւոր մասունքը, որոնք որ Հայաստանեայց Եկեղեցին դաւանում է Ճշմարիտ, Սուրբ, Առաքելական, ոչ մի դատողութեանց ներքոյ չեն կարող ընկնիլ, ինչպէս Կաթողիկոսի, այնպէս էլ բոլոր եպիսկոպոսներու ժողովոյն։

ԺԷ.

Ինչպէս ամենայն Հայոց Կաթողիկոսը, նոյնպէս և բոլոր եկեղեցականք պարտական են անխախտ և անքակտելի պահպանել Հայաստանեայց Եկեղեցւոյ Վարդապետութիւնն ու Հաւատոյ Գլխաւոր մասունքը։ Նրանց իշխանութիւնը հիմնուած է իրանց Եկեղեցւոյ պաշտպանութեան և հաւատարմութեան վրայ, որով երդւում են բոլոր եկեղեցականք իրանց հոգևորականութեան կարգն առնելու ժամանակ։

ԺԸ.

Եթէ Հաւատոյ մասանց և Հայաստանեայց Եկեղեցւոյ պաշտամանց անխախտ պահպանութիւնն է Կաթողիկոսի և բոլոր Հայոց եկեղեցականաց գլխաւոր պարտաւորութիւնը, ուրեմն նրանց ամենագլխաւոր պարտքն է' այս Վսեմ և Սուրբ Նպատակին յարմար միջոցներն ի գործ դնել։

ԺԹ.

Հայոց ազգի Կաթողիկոսին է պատկանում Հայաստանեայց եկեղեցւոյ գլխաւոր վարչութիւնը եկեղեցականաց ու Եկեղեցւոյ կարգերն ու կանոնները, ծէսերն ու արարողութիւնքը ճշտութեամբ կատարելու վրայ գլխաւոր վերահայեցողութիւնը։

Ի.

Կաթողիկոսն իր Եկեղեցւոյ նախնի կարգերուն ու կանոններուն համաձայն ընտրում է Հայաստանեայց եկեղեցւոյ վարչութեան համար,

Ա. Տեղապահ.

Բ. Կաթողիկոսական խորհուրդ.

Գ. Վիճակաւոր առաջնորդներ, որոնք իրանց մօտ խորհուրդներ կունենան:

ԻԱ.

Ամենայն Հայոց Կաթողիկոսը, իբրև անմիջապէս Քահանայապետ Հայաստանեայց Եկեղեցւոյ, իրաւունք ունի՝ արձակել, փոխել Կաթողիկոսական խորհրդոյն անդամներին, վիճակաւոր առաջնորդներին իրանց պաշտօնէն, նայելով իր Եկեղեցւոյ օգտին և յարգելով Հայոց ազգի կամքը։ Խաղաղութիւն և համակցութիւն են անհրաժեշտ պայմանք ժողովրդեան և նրա հոգևոր հովիւներու մէջ:



## ԳԼՈՒԽ Գ.

### Տեղապահի եւ Կաթողիկոսական խորհրդոյ պարտաւորութիւնը.

Ա.

Կաթողիկոսն ընտրում է իրան Տեղապահ այն եպիսկոպոսներէն մէկին, որ յարգ և պատիւ ունի Հայոց ազգի և Աթոռի առջև։

Բ.

Կաթողիկոսի Տեղապահը գործակից է լինում Կաթողիկոսին ամէն բանումը, ինչպէս կառավարելումն՝ այնպէս էլ ուրիշ գործերումը։

Գ.

Կաթողիկոսի Տեղապահը Կաթողիկոսի Էջմիածնայ Աթոռէն բացակայութեան ժամանակ, կամ թէ նրա մահուանէ յետոյ մինչև նոր Կաթողիկոսի ընտրութիւնը՝ Հայաստանեայց եկեղեցւոյ սովորութեանց համաձայն կառավարում է Կաթողիկոսական Գահը։

Դ.

Հայաստանեայց եկեղեցւոյ Հոգևոր գործոց գլխաւոր կառավարութեանց Կաթողիկոսական խորհուրդը բաղկանում է ութ մշտական անդամներէ, որոնք նշանակուած են Կաթողիկոսէն Հայաստանեայց եկեղեցին կառավարելու համար։

Ե.

Կաթողիկոսական խորհուրդն ունի խորհրդական ձայն. նրա գործողութեանցը պատկանում են՝ ըստ վարչական և դատաստանական մասին,

Ա. Վերահայեցողութիւն ամէն տեղերու և ծառայող անձանց գործողութեանցը վրայ. որոնք Էջմիածնայ Աթոռի իշխանութեան ներքոյ են։

Բ. Վերահայեցողութիւն Աթոռոյ կառավարութեան ներքև եղած վանքերու, եկեղեցիներու և ազգային հոգևոր ուսումնարաններու բարեկարգութեանց վրայ։

Գ. Նախանկատողութիւն Վանքեր, Եկեղեցիներ և Ազգային հոգևոր դպրեվանքեր կամ վարժարաններ հաստատելու։

Դ. Իրաւունք ունի վճռել, ինչպէս հոգևորականութեան և վարդապետութեան մէջ ընդունելու, այնպես էլ կարգընկեցանելու վարդապետութենէ և առ հասարակ քահանայական կարգէն վճռով Կաթողիկոսին։

Ե. Առանձին առանձին ցուցակագրութիւն կազմել բոլոր եկեղեցիներու, վանքերու, դպրեվանքերու, ազգային ուսումնարաններու, ըստ ամենայն վիճակաց։

Զ. Օտար դաւանութենէ Հայաստանեայց եկեղեցւոյ ծոցը մտնողներու գործերը տեսնելու, համաձայն օրինաց իւրաքանչիւր տէրութեան, որոյ իշխանութեան ներքև գտնուում են Հայք։

Է. Պատրաստել վկայականներ ծնելոց, մկրտելոց՝ պսակելոց և ննջեցելոց՝ այն տէրութեանց սահանջման ժամանակ, որոնց իշխանութեան տակ գտնուում են Հայք։ Մի խօսքով ամեն գործ ինչ որ լինում է վիճակային խորհուրդներումը և առաջարկուում է յանուն Կաթողիկոսի, ինչպէս են բողոքները, գանգատները, պսակներու աշխարհական իշխանութեանց չենթարկուելը, եկեղեցական պաշտօնէից յանցանքները, հոգևորականաց միմեանց հետ ունեցած անբաւականութիւնքը ևայլն և այլն։ Իսկ Կաթողիկոսական խորհրդոյն անդամներու, վիճակաւոր առաջնորդներու և վիճակային խորհրդներու վրայ եղած գանգատները ուղարկուում են յանուն Կաթողիկոսի։

Զ.

Կաթողիկոսական խորհուրդը բոլոր իր քննութիւնքը և կարծիքն ամենայն գործոց վրայ առանց ինչ բացառութեան ներկայացնում է Կաթողիկոսի բարեհաճութեանը։

Է.

Կաթողիկոսն ինչպէս անմիջական Հայրապետ Հայաստանեայց Եկեղեցւոյ, տնօրինում է ամենայն գործ իր բարեհաճ կամաց համաձայն, պահպանելով իր Եկեղեցւոյ և Ազգի մեծ օգուտները [illegible] հիմանց նախնի կարգաց և կանոնաց Հայաստանեայց եկեղեցւոյ։

## ԳԼՈՒԽ Դ.

*Իրաւունք եւ պարտք վիճակաւոր առաջնորդաց եւ վիճակային խորհրդոց Հայաստանեայց եկեղեցւոյ.*

### Ա.

*Կաթողիկոսը նշանակում է տաճարին և օգնական Եպիսկոպոսներէն վիճակաւոր առաջնորդ, ընդունելով ի յարգանս և ազգի կարծիքը նրանց նշանակելու ժամանակ, նա յայտնում է վիճակաւոր առաջնորդներու համար այն Տէրութեանց, որտեղ նրանց ուղարկում է առաջնորդ։*

### Բ.

*Հայաստանեայց եկեղեցւոյ առաջնորդը, երբոր նշանակուեցաւ այն պաշտօնին և գնաց իրան նշանակուած վիճակը՝ պարտաւոր է վարուիլ հաւատարմութեամբ այն Տէրութեանը, որտեղ է նրա վիճակը։*

### Գ.

*Հայոց վիճակաւոր առաջնորդը պարտաւոր է ցոյց տալ իրան անձովը օրինակ բարեպաշտութեան և ամէն քրիստոնէական և քաղաքական բարեգործութեանց, աշխատիլ ամէն իրամէն կախուած միջոցներով իրան յանձնուած հոգևոր հօտի բարոյական կեանքին համար։*

### Դ.

*Նա պէտք է արթնութեամբ հսկէ իրան վիճակի բոլոր հոգեւորական գործերու վրայ, շարժելով հոգևորականութիւնը դէպի առաքինութիւն համաձայն ուսման սուրբ Աւետարանին։*

### Ե.

*Հայոց վիճակաւոր առաջնորդը պարտաւոր է, որքան կարող է, աշխատիլ տարածել սուրբ Աւետարանի վարդապետութիւնը, բարոյականութիւնը և սուրբ Գրոց ընթերցանութիւնը, որոնք գլխաւոր աղբիւրն է ճշմարիտ բարոյականութեան, ի գործ դնելով այս բանիս համար քրիստոնէական ճշմարիտ հոգւոյն հա-*

*մաձայն՝ հեզ միջոցներ ուսուցանելոյ և համոզելոյ ։ Նա պէտք է այն ժամանակ հեռանայ այն բանէն, որնոր հեզութեան և մարդասիրութեան ընդդէմ է ։*

Զ.

*Վիճակաւոր առաջնորդն իր վիճակն այց ելանելու ժամանակ, առանձին մտադրութիւն է դարձնում եկեղեցականաց վրայ, վանքերու, եկեղեցիներու, դպրեվանքերու վրայ, վերջացնելով այն տեղերումը պատահած անկարգութիւնքը և աշխատելով ճանապարհ գտնելու, որ իսպառ վերջանան այդպիսի անկարգութիւնքը ։*

Է.

*Վիճակաւոր առաջնորդն առանձին ուշադրութիւն է անում իր վիճակի վանքերու, և եկեղեցիներու մօտ գտնուած ուսումնարաններու վրայ, աշխատելով ազգէն ընտրուած անձանց հետ միասին բարւոքել այն ուսումնարաններու վիճակը և տարածել լուսաւորութիւն ։*

Ը.

*Վիճակաւոր առաջնորդներու մօտ հաստատուում են վիճակային խորհուրդ որ բաղկանում են երեք մշտակայ անդամներով, այնպիսի Հայոցմէ, որոնք գիտեն ինչպէս իրանց ազգային օրէնքն ու լեզուն՝ նոյնպէս և այն Տէրութեանը, որու սահմաններումը գտնուում է նրանց վիճակը ։ Այս անդամոց նշանակելը և արձակելը կախուած է վիճակաւոր առաջնորդէն ։*

Թ.

*Վիճակային խորհուրդը գործակից է լինում վիճակաւոր առաջնորդին իր վիճակի հոգևոր գործերու կառավարութեանց մէջ. վիճակային խորհուրդին գործողութեանցն է պատկանում.*

*Ա. Անմիջական վերահայեցողութիւն իրան իշխանութեան ներքևեղած եկեղեցւոյ պաշտօնէից վրայ, ինչպէս քահանայից, նոյնպէս և վարդապետաց և վանականաց ։*

*Բ. Հոգատարութիւն և բարեկարգութիւն իր վիճակումը գըտնուած ազգային հոգևոր ուսումնարանաց, վանօրէից և եկեղեցեաց վրայ ։*

Ժ.

Վիճակաւոր առաջնորդն իր մօտ նշանակում է մի յաջորդ, որ գործակից է լինում իրան վիճակը կառավարելու ժամանակ. իսկ նրա բացակայութեան ժամանակ և մահուանէ յետոյ կառավարում է առ ժամանակ վիճակաւոր առաջնորդի տեղը։

ԺԱ.

Վիճակաւոր առաջնորդն իր կայարանէն դուրս՝ հոգևոր գործերը կառավարելու համար՝ նշանակում է գործակալներ. իսկ վիճակի արդիւնքը և միւս տնտեսական գործերը նա կառավարում է ազգէն ընտրուած անձանց հետ միասին. բոլոր վիճակի արդիւնքը նա ուղարկում է այն տեղ՝ որտեղն որ նշանակուած է։

ԺԲ.

Վիճակաւոր առաջնորդը, ինչպէս Հայոց ազգի հոգևոր հովիւ, իրաւունք ունի ազգային հոգևոր ուսումնարաններու ձեռքով, ազգէն ընտրուած անձանց հետ միասին տարածել գիտութեան լոյսը իր ազգին մէջ։

ԺԳ.

Հայաստանեայց եկեղեցւոյ վիճակաւոր առաջնորդը պարտաւոր է ամեն տարւոյ վերջին ներկայացնել Կաթողիկոսին լիակատար և մանրամասն հաշիւ իր ամեն գործողութեանց համար իրան յանձնուած վիճակումը։

ԺԴ.

Հայոց վիճակաւոր առաջնորդը, վիճակային խորհրդները և բոլոր Հայաստանեայց եկեղեցւոյ հոգևորականք են ամենայն Հայոց Կաթողիկոսի անպայման հնազանդութեան ներքև և պատասխանատու են նրա առաջին, ինչպէս Հայաստանեայց եկեղեցւոյ Հայրապետի առաջին, որուն ազգը հաւատացել է իր Եկեղեցւոյ ազատութիւնը և անկախութիւնը, ինչպէս իր Ընտրելոյն որ պատասխանատու է Աստուծոյ և Հայոց ազգի առաջ ։

## ԳԼՈՒԽ Ե.

### Հայոց հոգեւորականաց եւ արքազնագործ պաշտօնէից աղեանց համար։

Ա.

Հայաստանեայց եկեղեցին բաժանում է կրօնաւորութիւն և քահանայութիւն։ Կրօնաւորներն են, Կաթողիկոսը, եպիսկոպոսները, վարդապետները, աբեղաները և ուրիշ միանձն միաբանները։ Քահանայութեան են պատկանում սրբազնագործ պաշտօնեայքն, աւագ քահանայքն, քահանայքը, աւագ սարկաւագները և Եկեղեցւոյ միւս սպասաւորքը։

Բ.

Հայոց վանքերն անմիջապէս կախում ունին վիճակաւոր առաջնորդներէն և պարտաւոր են իւրաքանչիւր տարւոյ վերջին տալ լիակատար հաշիւ իրանց ամէն գործողութեանց համար։ Վանահարց վրայ եղած գանգատը տրւում է տեղական վիճակաւոր առաջնորդին։

Գ.

Հայոց վանքերումը բացի վարդապետներէն և տիրացուներէն կամ մայրապետներէն, կարող են բնակուիլ վիճակաւոր առաջնորդի հրամանովը արականաց վանքերումը ծերացած և անօգնական սրբազնագործ պաշտօնեայք, այն տեղ ապրելու և հանգչելու համար։ Իսկ կանանց վանքերումը անօգնական այրի կանայք հոգևոր կոչումէն, և զառամած պառաւունք։

Դ.

Հայոց վանքերը կառավարում են՝ արականայը վանահարք, վարդապետները և աբեղաները. իսկ կանանցը՝ մայրապետները. ինչպէս նրանց նոյնպէս և սրանց կարգում է վիճակաւոր առաջնորդը Կաթողիկոսի հաստատութեամբ։

Ե.

Վանահարքը կամ մայրապետքը վանքերը կառավարում են վանքական խորհրդին գործակցութեամբը, որ կազմւում է վա-

